# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11**

ՆՈՅԵՄԲԵՐ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1984 թվականի հոկտեմբերի 23-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի հերթական պլենումը:**

**Պլենումի բացման ժամանակ մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն:**

**Պլենումը քննարկեց «Երկրի պարենային ֆոնդի կայուն մեծացման նպատակով մելիորացիայի, մելիորացված հողերի օգտագործման արդյունավետության բարձրացման երկարաժամկետ ծրագրի մասին» հարցը: Այս հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնովը:**

**Մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՍՄԿԿ Սարատովի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Կ. Գուսևը, Ուկրաինական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Պ. Լյաշկոն, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ի. Բ. Ուսմանխոջաևը, Ղազախական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ա. Նազարբաևը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ն. Ն. Սլյունկովը, Ստավրոպոլի երկրամասի Ստեպնոյեի շրջանի «Կոմունիզմի ուղի» կոլտնտեսության նախագահ Ն. Դ. Տերեշչենկոն, Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Կ. Գրոսուն, ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր Ն. Ֆ. Վասիլևը, ՍՄԿԿ Կրասնոդարի երկրկոմի առաջին քարտուղար Գ. Պ. Ռազումովսկին, ՌՍՖՍՀ գյուղատնտեսության մինիստր Վ. Պ. Նիկոնովը, ՍՄԿԿ Ալթայի երկրկոմի առաջին քարտուղար Ն. Ֆ. Աքսյոնովը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Պ. Պ. Գրիշկյավիչուսը:**

**Քննարկված հարցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ընդունեց որոշում, որը հրապարակվում է մամուլում:**

**Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:**

# ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

Ընկերնե՛ր:

Այսօր քննարկվում է մի հարց, որն ուղղակի առնչություն ունի այն բանի հետ, ինչը կազմում է ՍՄԿԿ-ի գործունեության բարձրագույն նպատակը, այն է՝ սովետական մարդկանց կենսամակարդակի անշեղ բարձրացման հետ: Խոսքը վերաբերում է գյուղատնտեսական արտադրության հետևողական ինտենսիվացման, հողերի լայն մելիորացման հիման վրա պարենային պրոբլեմի լուծմանը նպատակամղված լրացուցիչ խոշոր միջոցառումներին:

Ինչպես հայտնի է, Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումում մենք կոլեկտիվ կերպով մշակել և հաստատել ենք երկրի պարենային ծրագիրը: Անցել է ընդամենը երկու տարի, բայց կարելի է վստահությամբ ասել, որ դա արդյունավոր ժամանակաշրջան էր:

1983 թվականին ստացվեց երկրի ողջ պատմության ընթացքում ամենամեծ ծավալի գյուղատնտեսական արտադրանքը: Այս տարի էլ, եղանակի խիստ աննպաստ պայմաններում, երբ երկրի շատ շրջաններում սաստիկ երաշտ էր, գյուղի աշխատավորները հերոսական պայքար են մղում, որպեսզի արդյունքը պակաս չլինի: Արդեն այսօր պարզ է, որ 1983—1984 թվականներին գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր արժեքը կլինի մոտավորապես 20 միլիարդ ռուբլով ավելի, քան հնգամյակի առաջին երկու տարում:

Առանձնապես ուրախալի են անասնապահության մեջ կատարված փոփոխությունները: Կաթի միջին տարեկան արտադրությունը ավելացել է 7,4 միլիոն տոննայով, մսինը՝ 1,4 միլիոն տոննայով, ձվինը՝ 4,6 միլիարդ հատով: Զգալիորեն ավելացել է բանջարեղենի և մրգեղենի բերքը: Դա թույլ է տվել բարձրացնել որոշ արժեքավոր մթերքների սպառման մակարդակը, մի բան, որը նաև ազդել է սովետական մարդկանց սննդի կառուցվածքի բարելավման վրա:

Մի խոսքով՝ գյուղատնտեսական արտադրության մեջ հաջողություններ կան և դրանք անտարակուսելի են: Դրանց մասին չասել կնշանակեր պատշաճը չհատուցել դաշտերի ու ֆերմաների աշխատողների անձնվեր ու ոչ դյուրին աշխատանքին: Հարկ է ըստ արժանվույն գնահատել կուսակցական կոմիտեների, սովետական ու տնտեսական մարմինների կազմակերպչական ու քաղաքական լարված աշխատանքը գյուղում: Պետք է նաև նշել գյուղատնտեսության զարգացման մեջ արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, ամբողջ ժողովրդական տնտեսության աշխատավորական կոլեկտիվների ներդրած հսկայական ավանդը:

Իհարկե, մենք պարտավոր ենք այսուհետև էլ բազմապատկել գյուղատնտեսական արտադրանքի թողարկումն ավելացնելու ջանքերը, անհրաժեշտ պայմաններ ստեղծել ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի հաջող աշխատանքի համար:

Հանգուցային պրոբլեմը, ինչպես որ նախկինում, դա հացահատիկի արտադրության անշեղ ավելացումն է: Հարկավոր է ապահովել դրա աճի այնպիսի տեմպեր, որ մոտակա տարիներին լիովին բավարարվեն երկրի բոլոր պահանջմունքները:

Երկրորդ անհետաձգելի խնդիրն է՝ ամրապնդել անասնապահության դրական միտումները, անհրաժեշտ ամեն ինչ անել անասնապահության ավելի արագ զարգացման համար: Մենք պետք է անասունների մթերատվությունը նախ և առաջ բարձրացնենք նախիրը որակապես բարելավելու և կերի բազմն



վճռականապես ամրապնդելու միջոցով: Նույն գլխաքանակի պայմաններում կերի, աշխատանքի ու միջոցների ռացիոնալ ծախսումներով ստանալ ավելի շատ արտադրանք՝ այսպիսին պետք է լինի անասնապահության զարգացման հիմնական ուղղությունը:

Կասկածից վեր է, որ այս հանգուցային խնդիրների լուծման միակ ճիշտ ուղին գյուղատնտեսական արտադրության համակողմանի ինտենսիվացումն է, նրա փոխադրումը արդյունաբերական ռելսերի վրա: Իհարկե, մենք այսուհետև էլ կավելացնենք կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ, այն կհագեցնենք տեխնիկայով, նյութական այլ միջոցներով:

Բայց թե՛ այսօր և թե առաջիկայում գլխավորն այն է, որ բարձր հատույցով օգտագործվեն այդ բոլոր ռեսուրսները, դրանք կենտրոնացվեն այն տեղամասերում, որտեղ կարելի է առավելագույն և արագ արդյունք ստանալ:

Այսպիսի մոտեցումը արդեն ծանրակշիռ արդյունքներ է ապահովել արդյունաբերական թռչնապահության, անասունների բտման գործում, եգիպտացորենը, շաքարի ճակնդեղը, այլ կուլտուրաներ ինդուստրիալ տեխնոլոգիայով մշակելիս: Կենտկոմի քաղբյուրոն վերջերս հավանություն տվեց աշնանացան և գարնանացան ցորենի մշակության ինտենսիվ մեթոդների արմատավորմանը, որոնք պետք է երկրին լրացուցիչ տան միլիոնավոր տոննաներով հացահատիկ: Այս մայրուղիով պետք է լայն ճակատով շարժվել գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերում:

Ընկերնե՛ր, այն դրականը, ինչ ձեռք է բերված տվյալ փուլում, և այն, ինչ մենք պետք է անենք, մեծապես կապված է գյուղի սոցիալական վերափոխման նպատակով ձեռնարկվող միջոցառումների հետ: Մարդկանց նկատմամբ ցուցաբերվող հոգատարության մեջ, նրանց աշխատանքի ու կենցաղի, կուլտուրական կյանքի հետագա ծաղկման համար անհրաժեշտ պայմանների ստեղծման մեջ կուսակցությունը տեսնում է արտադրական հաջողությունների հիմքը: Այս հարցերին քաղբյուրոն անդուլ ուշադրություն է նվիրում և կնվիրի: Այսօր մենք կարող ենք միանգամայն որոշակիորեն ասել, որ գյուղի աշխատավորների կյանքում տեղի են ունենում արմատական փոփոխություններ, դեպի լավն է փոխվում մեր գյուղի կերպարանքը:

Հնգամյակի չորս տարում գյուղում շահագործման կհանձնվեն 132 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, որ թույլ կտա բարելավել ավելի քան 10 միլիոն մարդու բնակարանային պայմանները: Ընդլայնվել են դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների, առողջապահության ու մշակույթի օբյեկտների շինարարության մասշտաբները, կատարելագործվում է կենցաղային սպասարկումը: Տարեցտարի բարձրանում են կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների ռեալ եկամուտները, արագորեն աճում է ապրանքների վաճառքը:

Հապա, ընկերներ, խորամուխ եղեք այս թվերի մեջ: ՍՍՀՄ կենտվիճվարչության տվյալների համաձայն այսօր գյուղում յուրաքանչյուր 100 ընտանիքից 85-ը ունի հեռուստացույց, 87-ը՝ ռադիոընդունիչ, 73-ը՝ սառնարան, շուրջ 60-ը՝ լվացքի մեքենա: Գյուղական վայրերում գրեթե յուրաքանչյուր երկրորդ ընտանիք ունի մարդատար ավտոմոբիլ կամ մոտոցիկլետ: Այս ամենը մեր ծրագրային խնդիրներից մեկի՝ գյուղական բնակչության կենսամակարդակը քաղաքայինին մերձեցնելու խնդրի լուծման ճանապարհին ձեռք բերված նկատելի նվաճումների վկայությունն է:

Կամ վերցնենք այսպիսի մի հարց. անհատական օժանդակ տնտեսությունների զարգացման վերաբերյալ հայտնի որոշումների ընդունումից հետո բնակչությանը պատկանող խոշոր եղջերավոր անասունների քանակն ավելացել է մեկ միլիոն 600 հազար գլխով, նույնքան էլ աճել է նաև խոզերի գլխաքանակը:

Սկսել են պահել ավելի շատ ոչխար ու թռչուն: Դա էական հավելում է մեր կոլտնտեսային-սովխոզային արտադրությանը:

Հատկապես ուզում եմ նշել, որ վերջին տարիներս սկսվել է դեպի քաղաքներ գյուղական բնակչության արտահոսքի կրճատում: Ուղղակի ասենք՝ դա

երկար սպասված պրոցես է և այժմ այն դարձել է իրողություն։ Գյուղից մարդկանց հեռանալը երեք տարում ամբողջությամբ վերցված նվազել է 8 տոկոսով։ Ռուսաստանյան Ֆեդերացիայում՝ 24 տոկոսով, իսկ ոչ սևահողային գոտում՝ 30 տոկոսով։

Նաև շատ կարևոր է, որ գյուղական ընտանիքներում ավելացել է ծնունդը։ Ընթացիկ հնգամյակում դա առավել բնորոշ է ՌՍՖՍՀ-ին, Ուկրաինային, Բելոռուսիային, Մերձբալթիկայի հանրապետություններին, թեպետև այդ ռեգիոններում ժողովրդագրական կարգի հայտնի դժվարությունները տակավին մնում են։ Իսկ երկրում ամբողջությամբ վերցված ծնունդը 1983 թվականին գյուղում հասավ վերջին 20 տարում ամենաբարձր մակարդակին։

Ընկերնե՛ր, հակիրճ ելույթում ես նպատակ չեմ դնում տալու պարենային ծրագրի կատարման առաջին արդյունքների սպառիչ վերլուծությունը։ Մի բան կարելի է հաստատ ասել. ծրագիրը կենսագործվում է, և սովետական մարդիկ դա ակներևորեն տեսնում են։

Իհարկե, մենք հեռու ենք ինքնահանգստացումից։ Գյուղատնտեսության մեջ մի շարք տեղամասերում վիճակը դարձյալ ծանր է։ Այդ ճյուղի արտադրանքի արտադրությունը տակավին ետ է մնում երկրի հարաճուն պահանջմունքներից։ Բոլոր դրական արդյունքներով հանդերձ, շատ քաղաքների բնակչության սննդամթերքի և ամենից առաջ մսի մատակարարման լարվածությունը դեռևս վերացված չէ։ Եվ սա անհանգստացնում է Կենտրոնական կոմիտեին, նրա ամենօրյա հոգսի առարկան է։

Այն պրոբլեմները, որ կյանքն առաջադրում է գյուղատնտեսությունը էկոնոմիկայի բարձր զարգացած հատվածի վերածելու ճանապարհին, պահանջում են նոր, առավել արդյունավետ լուծումներ։ Եվ խոսքը վերաբերում է ոչ թե մեր դիրեկտիվներում ծանրության կենտրոնների տեղափոխմանը, այլ իրոք նորարարական և ստեղծագործական մոտեցումներ գտնելուն։

Ելնելով դրանից, Կենտրոնական կոմիտեն այսօր դնում է հողերի մելիորացումը լայն մասշտաբով ծավալելու հարցը, այն դիտելով որպես գյուղատնտեսության հետագա վերելքի, երկրի պարենային ֆոնդի կայուն ավելացման վճռական գործոն։

Դուք, ընկերնե՛ր, լավ գիտեք, թե մեզ ինչպիսի պայմաններում է վիճակված վարել գյուղատնտեսական արտադրությունը։ Չէ որ ցանքատարածությունների գերակշիռ մասը գտնվում է բնակլիմայական աննպաստ պայմաններում, ենթակա է երաշտի։ Նման վիճակում կայուն բերք ստանալու համար պետք է նվազագույնի հասցնել գյուղատնտեսության կախումը եղանակի փոփոխություններից։

Սա շատ խոշոր խնդիր է, երկրագործի դարավոր երազանքը։ Այս խնդրի լուծման ուղիների շուրջ սովետական իշխանության արդեն առաջին տարիներին մտածում էր Վ. Ի. Լենինը։ 1921 թվականին նրա նախաձեռնությամբ ընդունվել է «Երաշտի դեմ պայքարելու մասին» Աշխատանքի և պաշտպանության խորհրդի որոշումը, որի մեջ ասված է. «Երաշտի դեմ պայքարելը առաջնահերթ կարևորության գործ համարել երկրի գյուղատնտեսական կյանքի համար, իսկ այդ ուղղությամբ ձեռնարկվող միջոցառումները դիտել որպես մարտական նշանակություն ունեցող»։

Նույն տարում Վլադիմիր Իլյիչը նամակով դիմում է Կովկասի կոմունիստներին։ Անսահման պարզությամբ և խորությամբ նա նշում է. «Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի այն, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ»։

Ահա այսպես, լենինյան իմաստնությամբ և կանխատեսությամբ էր խնդիրը դրվում այն ժամանակ։ Կարծում եմ՝ հարկ չկա ապացուցելու, որ իր հրատապությունն ու սրությունն այն չի կորցրել նաև մեր օրերին։ Անհրաժեշտ է մարդկանց վերջիվերջո ազատել բերքի բախտի համար տանջալից անհանգստությունից, նրանց տալ տարերքի նկատմամբ հաղթանակի բերկրանքը։ Սա մեր պարտքն է, սա մեր պարտականությունն է։

Նիկոլայ Ալեքսանդրովիչ Տիխոնովը հանգամանորեն կշարադրի ՍՍՀՄ



Մինիստրների խորհրդի մշակած և Կենտկոմի քաղբյուրոյի հաստատած՝ հողերի մելիորացման մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի պլանը։

Այն որոշումները, որ այսօր ընդունվելու են, անտարակույս, նոր, խոշոր փուլ են սկզբնավորում հողերի արգավանդության բարձրացման պայքարում։ Նախատեսված է համեմատաբար կարճ ժամանակամիջոցում մեկուկես անգամ ընդլայնել ոռոգելի և ցամաքեցված հողատարածությունները, որը թույլ կտա կրկնապատկել դրանցից ստացվող բուսաբուծական արտադրանքը։ Դրա շնորհիվ երկիրը կկարողանա, անկախ եղանակի տատանումներից, ստանալ երկրագործության ամբողջ արտադրանքի գրեթե կեսը։ Սա, ընկերնե՛ր, ամենագլխավորն է։

Եվ հարցը ոչ միայն մասշտաբներն են, թեպետև, ինչպես տեսնում եք, դրանք միանգամայն պատկառազդու են։ Բանի էությունը հողերի բարելավման աշխատանքի որակական կողմն է։ Ի նկատի է առնվում ստեղծել արդյունաբերական հիմքի վրա գյուղատնտեսական արտադրանքի երաշխավորված արտադրության խոշոր գոտիներ, հացահատիկի, կերի, բանջարեղենի յուրօրինակ ֆաբրիկաներ։ Ենթադրվում է, որ դա պետք է արվի, օգտագործելով ժամանակակից ինժեներային, ըստ էության, ավտոմատ համակարգեր։ Նորացված հողերում առաջնահերթ կարգով պետք է կիրառում գտնեն երկրագործության գիտականորեն հիմնավորված եղանակները, լավագույն սորտերն ու հիբրիդները, առաջավոր տեխնոլոգիաները, բերքի ծրագրավորումը։

Ճիշտն ասած՝ մենք առաջներում անգամ երազել չէինք կարող գյուղում առաջադրել և լուծել նման խնդիրներ, որոնք սկզբունքորեն նոր բնույթ են կրում։ Այժմ այդպիսի հնարավորություններ մենք ունենք։ Եթե տնտեսությունները առաջներում լոկ ստանում էին այս կամ այն առանձին և այն էլ նվազ արտադրողական տեխնիկան, ապա այժմ մեքենաշինությունն անցնում է մեքենաների ամենաարդիական կոմպլեկտների և համակարգերի արտադրությանը։ Ստեղծված են բույսերի պաշտպանության արդյունավետ քիմիական միջոցներ, ինտենսիվ տիպի կուլտուրաների սորտեր ու հիբրիդներ։ Աճում է հանքային պարարտանյութերի թողարկումը։ Ներկայումս մեր գյուղատնտեսությունն ունի որակյալ մասնագետների և արտադրության խոշոր կազմակերպիչների կադրեր։ Զորեղանում են, հատկապես շրջանային օղակում, ագրոարդյունաբերական միավորումները՝ որպես գյուղատնտեսության և արդյունաբերության ինտեգրացման հիմնական ձև։ Հետևողականորեն կատարելագործվում է տնտեսական մեխանիզմը, զարգանում է բրիգադային կապալը գյուղում։ Այժմ խնդիրն այն է, որ առավելագույն չափով գործի դրվեն այս բոլոր նոր հնարավորությունները։

Նախ և առաջ, ընկերնե՛ր, գյուղատնտեսության մթերատվության բարձրացման մասին հոգալը պահանջում է այլ վերաբերմունք հողի՝ մեր ամենաարժեքավոր կապիտալներից մեկի, նկատմամբ։ Իսկ ինչ վերաբերում է ոռոգվող և ցամաքեցված հողերին, ապա դրանց նկատմամբ պետք է է՛լ ավելի հոգատար վերաբերմունք լինի։ Երկրագործի լեզվով դա նշանակում է բարելավված հեկտարի մեջ ներդնել այն ամենը, ինչ անհրաժեշտ է, այնտեղ ներդնել ամբողջ հոգին, և այդ դեպքում հողը առատ հատույց կտա։

Հարկավոր է ելնել այն բանից, որ մելիորացումը երբեմն բառիս լիակատար իմաստով կանխորոշում է տնտեսության և ամբողջ շրջանների կենսունակությունը։ Վերցրեք Սարատովի մարզը։ Այդտեղ երաշտի հարվածները այնքան հաճախակի և խիստ են, որ ոչ հեռու անցյալում շատ տնտեսություններ տարիներով չէին կարողանում խուսափել կերապակասությունից։ Ինձ ընկ. Վ. Կ. Գուսևը պատմել է, որ ջուր բերվելուց հետո մարդիկ վստահություն գտան, հեռանկար տեսան, սկսեցին ավելի լավ ապրել և ավելի լավ աշխատել։ Այժմ, երբ ոռոգովի դաշտը կազմում է կես միլիոն հեկտար, մարզը կայուն կերպով կատարում է պետությանը անասնապահական մթերքների վաճառքի պլանները։ Լուծված է բնակչությանը բանջարեղենի մատակարարման պրոբլեմը։

Ոռոգումը բառացիորեն կերպարանափոխել է նույնիսկ այնպիսի դարա-

հեղեղատներն ու ավազոտ հողերը, այնտեղ դաշտերը քիչ են տուժում խորշակից, հողմային ու ջրային էրոզիայից։ Ըստ երևույթին այստեղ հարց կա, և դրանով անհրաժեշտ է զբաղվել լրջորեն։ Դա վերաբերում է թե՛ անտառադրանով անհրաժեշտ... 

Ահա այն նկատառումները, որ ես կուզենայի հայտնել օրակարգում դրված հարցերի կապակցությամբ։

Ընկերնե՛ր, մեր կուսակցությունը թևակոխել է իր հերթական XXVII համագումարի գործնական նախապատրաստման ժամանակաշրջանը։ Ես գրողների միության վարչության հոբելյանական պլենումում արդեն ասել եմ, որ այժմ Կենտկոմի քաղբյուրոն հատուկ ուշադրություն է նվիրում ՍՄԿԿ-ի ծրագրի նոր խմբագրույթի պատրաստմանը։ Միաժամանակ առաջարկություններ են մշակվում կուսակցության կանոնադրության մեջ հնարավոր փոփոխությունների մասին։ Շատ կարևոր է, որ մենք ապահովենք այդ հիմնադրական փաստաթղթերի օրգանական միասնությունը։

Կանոնադրության մեջ, ինչպես որ ծրագրի նոր խմբագրույթում, պետք է իրենց անդրադարձումը գտնեն կուսակցության ներքին կյանքի կազմակերպմանը, կուսակցության յուրաքանչյուր օղակի գործունեության ոճին ու մեթոդներին, կոմունիստների աշխատանքին ու վարքագծին, նրանց ակտիվությանը, պատասխանատվությանն ու կարգապահությանը ներկայացվող այն բարձր պահանջները, որ բխում են ՍՄԿԿ-ի քաղաքական կուրսից։

Համագումարին նախապատրաստվելու անկապտելի բաղկացուցիչ մասն է տասներկուերորդ հնգամյակի և հեռանկարի պլանների մշակումը, որոնց մեջ պետք է մարմնավորել և կոնկրետացնել կուսակցության տնտեսական ստրատեգիան մինչև մեր հարյուրամյակի վերջը։

Այդ պլանների հիմնական նպատակը պարզ է։ Դա այն է, որ, հենվելով սովետական մարդկանց աշխատանքի առավել ծանրակշիռ արդյունքների վրա, որակապես նոր աստիճանի հասցվի ժողովրդի բարեկեցությունը, զգալիորեն բարձրացվի մեր ժողովրդի կյանքի նյութական և հոգևոր մակարդակը։

Կուսակցությունը հստակորեն սահմանել է սոցիալ-տնտեսական առաջընթացի նոր բնագծերի հասնելու գլխավոր ուղիները։ Այդ ուղիներն են հանրային արտադրության ավելի արագ զարգացումը, աճի ինտենսիվ գործոնների առավելագույն օգտագործումը։ Ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման գործում մենք պետք է արմատական բեկման հասնենք արդեն տասներկուերորդ հնգամյակում։

Էկոնոմիկան ինտենսիվացման ռելսերի վրա կարելի է փոխադրել գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա միայն։ Պետք է ամենուրեք ձգտել աշխատանքի արտադրողականության վճռական բարձրացման և արտադրանքի որակի բարելավման։ Պակաս կարևոր չէ այն, որ բոլոր ճյուղերում հաստատակամորեն շարունակեն խնայողության ռեժիմն ուժեղացնելու, կառավարումը և տնտեսական մեխանիզմը կատարելագործելու գիծը։

Արագ տեմպեր, արտադրության արդյունավետություն, արտադրանքի բարձր որակ՝ այս ամենը պետք է դառնա յուրաքանչյուր ճյուղի, յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի պարտադիր կանոնը, ես կասեի՝ յուրաքանչյուր աշխատողի աշխատանքի նորման։ Եվ այստեղ ոչ մի զիջում չպետք է լինի։

Ներկայումս առանձնապես կարևոր է այդ սկզբունքային հիմնադրույթները թարգմանել առաջադրանքների և պետական պլանների ցուցանիշների կոնկրետ լեզվի, որոնք կուսակցության տնտեսական քաղաքականության իրացման գլխավոր գործիքն են։

Կենտկոմի քաղբյուրոն քննարկել է հեռանկարային պլանների մշակման աշխատանքի նախնական արդյունքները։ Խնդիր է առաջադրված նախատեսել արտադրության զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, ժողովրդի կենսամակարդակի աճի ավելի բարձր, լարված պլանային առաջադրանքներ։ Այժմ պետպլանում, մինիստրություններում ու գերատեսչություններում, հանրապետություններում ու մարզերում, ձեռնարկություններում աշխատանք է ծավալված ռեզերվներն այնպես օգտագործելու համար, որ մեր պլաններն է՛լ ավելի մեծ չափով նպատակամղվեն առավելագույն վերջնական արդյունքների հասնելուն։



Օրինակ, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը հնարավորություն է գտել պլանի մեջ հինգ տարում նախատեսել արտադրանքի աճ 35 տոկոսով։ Դա այդ մինիստրության գծով ՍՍՀՄ պետպլանի նախնական կանխանշումներից բարձր է։

Գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցում է հանդես բերել Վլադիմիրի մարզային կուսակցական կազմակերպությունը։ Լրացուցիչ ռեզերվների որոնումը հնարավորություն է ընձեռել արդյունաբերական արտադրության ավելի վաղ կանխանշված աճը ավելացնել 1,3 անգամ։

Վերջերս, ինչպես գիտեք, Կենտկոմը հավանություն տվեց էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման ուղղությամբ կուսակցության Լենինգրադի մարզկոմի կողմից կատարվող աշխատանքին։ Այս ուղղությամբ շատ բան է արվում Մոսկվայում, Ուկրաինայում, Ղազախստանում, Վրաստանում և այլ ռեգիոններում։ Կարծում ենք նման աշխատանքը հարկավոր է ավելի ակտիվորեն կատարել. յուրաքանչյուր հանրապետությունում, մարզում, բոլոր մինիստրություններում, յուրաքանչյուր ձեռնարկությունում։

Պատրաստվելով համագումարին, կուսակցությունը աշխատավորների ջանքերը կենտրոնացնում է ընթացիկ տարվա և ամբողջությամբ վերցրած հնգամյակի պլանները հաջողությամբ ավարտելու վրա։ Արդեն այսօր կարելի է ասել, որ այս տարվա արդյունքները վատ չեն լինի։ Ժողովրդական տնտեսությունը շարունակում է արագացնել տեմպերը, բարելավվում են որակական ցուցանիշները, աճում է նաև սովետական մարդկանց կենսամակարդակը։

Բայց մենք պարզորոշ տեսնում ենք նաև վրիպումները։ Ոչ քիչ ձեռնարկություններ ու տնտեսություններ, մի շարք ճյուղեր աշխատում են իրենց հնարավորություններից ցածր, չեն կատարում պլաններն ու պարտավորությունները։ Ժամանակ դեռ կա։ Մինչև հնգամյակի վերջը մեկ տարուց ավելին կա, և շատ բան կարելի է շտկել։ Հարկավոր է ավելի մեծ եռանդով և հաստատակամորեն կարգուկանոն հաստատել արտադրությունում, բարձրացնել կազմակերպվածությունը, ամրապնդել պլանային և արտադրական կարգապահությունը՝ հատկապես ետ մնացող տեղամասերում։

Մի քանի խոսք գյուղատնտեսական տարին ավարտելու և եկող տարվա բերքը նախապատրաստելու մասին։ Վատ եղանակի պատճառով մի շարք շրջաններում ցանքսերը տուժեցին։ Դրա հետևանքով հացահատիկի բերքը էականորեն պակաս կլինի։ Որոշակի լարվածություն է ստեղծվել անասնապահությունը կերով ապահովելու գործում։ Գյուղի աշխատավորները ամենուրեք քաղաքի բնակիչների ակտիվ մասնակցությամբ անձնվեր աշխատանք են կատարում հաղթահարելու առաջացած դժվարությունները։ ՍՄԿԿ Կենտկոմը բարձր է գնահատում այդ ջանքերը։

Այժմ շատ կարևոր է բոլորի հնարավորությունները օգտագործել, որպեսզի ապահովվի անասունների ձմեռման հաջող անցկացումը, թույլ չտրվի նույնիսկ նվազագույն անկում անասնապահական մթերքների արտադրության և մթերումների գործում։ Պետք է բարձր մակարդակով անցկացվի գարնան դաշտային աշխատանքների ամբողջ նախապատրաստությունը։

Մի խոսքով՝ այս տարվա մնացած ամիսներին և հնգամյակի եզրափակիչ տարում պետք է բոլորն աշխատեն հարվածայնորեն, լիակատար նվիրումով, հուսալի հիմք ստեղծեն նոր հնգամյակում վստահ մեկնարկի համար։

Ընկերնե՛ր, այսօր Կենտկոմի պլենումը կքննարկի հողի արգավանդության բարձրացման ստեղծարար մեծ աշխատանքների պլանը։ Այդ պլանի կենսագործումը կուսակցությունը համարում է հարվածային ուղղությունը մոտակա տարիներին։

Պլենումի մասնակիցները ծանոթացել են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներին, որոնցով կոնկրետացվում է մելիորացման ծրագիրը։ Ուզում եմ Կենտկոմի քաղբյուրոյի անունից դիմել միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների առաջին քարտուղարներին, խնդրելով կուսակցական խիստ վերահսկողության տակ առնել այդ որոշումների կատարումը։

Հաջողությունը կախված կլինի առաջադրվող խնդիրների քաղաքական նշանակությունը յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր կոլեկտիվի կողմից ըմբռնվելուց, բոլոր տեղամասերում գործի կազմակերպումից։ Սրա վրա պետք է կենտրոնացնել կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, սովետական ու տնտեսական մարմինների գործունեությունը։

Յուրաքանչյուր հանրապետությունում ու մարզում, յուրաքանչյուր շրջանում պետք է մշակել և իրականացնել նախատեսված միջոցառումների կենսագործման հստակ պլան, հաշվի առնելով տեղական արտադրական և բնակլիմայական պայմանները։ Այստեղ առանձնապես կարևոր է ստեղծագործական մոտեցում, տնտեսատիրական հնարագիտություն, ձեռներեցություն հանդես բերելը, սովորական դարձած, բայց հնացած ստանդարտներից խույս տալը։ Պետք է առաջին պլանում դրվի բարձրորակ մելիորատորների, գյուղատնտեսների և գյուղատնտեսության այլ մասնագետների պատրաստումը բարելավելու աշխատանքը։ Պետք է ավելի խստապահանջ լինել մելիորացման աշխատանքների արդյունավետ կատարման և բարելավված հողերում տնտեսավարման արդյունքների համար։

Նոր խնդիրների լույսով բարձրանում են կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպություններին, կուսակցության գյուղական շրջկոմներին ներկայացվող պահանջները։ Նրանք կոչված են ուժեղացնելու մարդկանց հետ տարվող դաստիարակչական աշխատանքը, հասնելու կազմակերպվածության և կարգուկանոնի բարձրացմանը գյուղի աշխատանքային կյանքի բոլոր օղակներում, յուրաքանչյուր աշխատավորի մեջ զարգացնելու բարձր պատասխանատվության զգացումը հանձնարարված տեղամասի գործերի համար։

Շատ անելիքներ ունեն գաղափարախոսական ճակատի աշխատողները, մասսայական ինֆորմացիայի միջոցները։ Նրանց ուղղակի պարտականությունն է՝ ուշադրության կենտրոնում պահել գյուղում կուսակցության կողմից կատարվող աշխատանքը, ավելի լրիվ լուսաբանել գյուղի աշխատավորների գործերը, բարձրացնել նրանց աշխատանքի հարգը։

Կուսակցությունը հուսով է, որ մելիորացման ծրագիրը ջերմ արձագանք և պաշտպանություն կգտնի մեր կոմերիտմիության կողմից։ Սովետական մարդուն ի սպաս դնել միլիոնավոր հեկտարներով նորացված հողեր՝ սա թե՛ ռոմանտիկա է և թե աշխատանքային կոփում մեր փառապանծ երիտասարդության համար։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ հողերի մելիորացումը զարգացնելու երկարաժամկետ ծրագրի կատարումը կդառնա համաժողովրդական գործ։ Դա թույլ կտա նոր խոշոր քայլ անել բարձր զարգացած և կայուն գյուղատնտեսական արտադրություն ստեղծելու ճանապարհին, ավելի բարձր աստիճանի հասցնել ամբողջ սովետական էկոնոմիկան։ (Ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով)։

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին»։**

Որոշման մեջ նշված է, որ, կատարելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ցուցումները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները հասել են գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի որոշակի բարելավման։ Բարձրանում են այդ աշխատանքի գիտական մակարդակը, գործունությունը, ամրապնդվում է կապը կյանքի հետ, սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման հետ։ Աճել է աշխատավորների արտադրական և հասարակական ակտիվությունը։ Կատարվում են հնգամյակի առաջադրանքները արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, ժողովրդական սպառման առարկաների արտադրության գծով։

Ընդլայնվում և խորանում են կուսակցական կոմիտեների կապերը մասսաների հետ։ Հանրապետությունում առկա է բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ։ Գաղափարադաստիարակչական աշխատանքը ավելի մեծ չափով է կենտրոնացվում աշխատավորական կոլեկտիվներում։ Արտադրական բրիգադների 70 տոկոսում ստեղծված են կուսխմբեր կամ էլ կան կուսկազմակերպիչներ։ Քաղաքական դաստիարակության, ժողովրդատնտեսական պլանների գաղափարախոսական ապահովման դրական փորձ են կուտակել «Մասիս», «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորումների, Լենինականի տեքստիլ կոմբինատի, մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի, Աբովյանի շրջանի Կույբիշևի անվան կոլտնտեսության, Էջմիածնի շրջանի Բաղրամյանի անվան սովխոզի և ուրիշ կուսակցական կազմակերպություններ։ Բարձրացել է ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների դաստիարակչական դերը։ Բարելավվում է ստեղծագործական միությունների գործունեությունը, ուժեղանում է մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։

Ավելի բովանդակալից է դառնում ինտերնացիոնալ դաստիարակության, ՍՍՀՄ-ի, սոցիալիստական Հայաստանի պատմական նվաճումների պրոպագանդման աշխատանքը։ Ծավալվում է Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 40-ամյակի նախապատրաստության գործը։ Կուսակցական, կոմերիտական կոմիտեների մշտական հոգատարության առարկա է երիտասարդության մեջ մեր սովետական հայրենիքի համար հպարտության, հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքի կատարմանը

պատրաստակամության դաստիարակումը: Երևան, Լենինական, Կիրովական քաղաքների աշխատավորների օրինակով տարածում է ստանում արտադրական բրիգադների շեֆությունը դպրոցական դասարանների և մանկական նախադպրոցական հիմնարկների նկատմամբ: Ամենուրեք պայմաններ են ստեղծվում ռուսաց լեզուն խորապես ուսումնասիրելու համար: Ավելի ակտիվ են մղվում իրավական պրոպագանդան, պայքարը հարբեցողության դեմ, որոշ չափով կրճատվել է իրավախախտումների թիվը:

Դրա հետ մեկտեղ կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները գաղափարախոսական, մասսայական-քաղաքական գործունեությունը դանդաղ են կատարելագործում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների լույսով, լիովին չեն հաղթահարել նրա խզումը պրակտիկ խնդիրներից, սոցիալ-տնտեսական իրական պրոցեսներից: Գաղափարախոսական աշխատանքը դեռևս չի դարձել յուրաքանչյուր կոմունիստի գործը: Մի շարք կուսակցական կոմիտեներում, սկզբնական կուսկազմակերպություններում չի ձևավորվել բնակչության տարբեր կատեգորիաների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի արդյունավետ համակարգ, խորությամբ և քննադատաբար չի վերլուծվում գործերի վիճակը, թույլ են տրվում բարեհոգություն և ինքնահանգստացում:

Որոշ կուսակցական կոմիտեների պակասում է քաղաքական սրությունն ու սկզբունքայնությունը մարդկանց դաստիարակության հարցում վրիպումների հանդեպ վերաբերմունք դրսևորելու գործում: Գաղափարադաստիարակչական աշխատանքում թույլ են ներգրավվում ղեկավար կադրերը, նրանցից շատերը չունեն կուսակցական-քաղաքական կրթություն: Կուսակցական ուսուցման ասպարեզում արմատախիլ չի արված դեկլարատիվությունը:

Կուսակցության անդամության թեկնածուների և մինչև մեկ տարվա ստաժ ունեցող կոմունիստների գրեթե մեկ երրորդը չի սովորում երիտասարդ կոմունիստի դպրոցներում: Կոմերիտական քաղուսավորության ցանցի պրոպագանդիստների միայն կեսը, իսկ տնտեսագիտական կրթության համակարգում նրանց միայն 27 տոկոսն է ՍՄԿԿ անդամ:

Լուրջ թերություններ կան բնակչության աթեիստական դաստիարակության գործում: Առանձին գիտական հետազոտություններում, գեղարվեստական ստեղծագործություններում պատմական իրադարձությունների ու անհատների գնահատելիս նկատվում է ոչ դասակարգային մոտեցում:

Կուսակցական շատ կոմիտեներ, սկզբնական կուսակցական կազմակերպություններ բավարար չափով չեն հոգում պետական, պլանային ու աշխատանքային կարգապահության ամրապնդման մասին: Մեծ են աշխատաժամանակի կորուստները: Հանրապետության յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն խախտում է մատակարարումների պայմանագրերը: Արդյունաբերության մեջ չի պահպանվում նորմատիվ հարաբերակցությունը աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի միջև:

Չեն կատարվում բնակարանների, հիվանդանոցների, մանկապարտեզների շինարարության հնգամյակի առաջադրանքները: Ցածր է մնում գործարկվող օբյեկտների որակը: Չլուծված հարցերը դեռևս շատ են կոմունալ տնտեսության մեջ:

Կուսակցական ու սովետական մարմինները խոշոր վրիպումներ են թույլ տալիս կադրերի պատրաստման և աշխատանքային ռեսուրսների օգտագործման հարցում: Հաստոցավարների, զոդողների, տեքստիլագործների պակասի պարագայում պրոֆտեխուսումնարաններում առատորեն պատրաստվում են ոսկերիչներ, խոհարարներ, վարսավիրներ: Չնայած ձեռնարկվող միջոցառումներին, աշխատունակ բնակչության մի զգալի մասը զբաղված չէ հանրային արտադրության մեջ, չի կրճատվում տարագնացությունը: Բոլոր հնարավորությունները չէ, որ օգտագործվում են՝ հաղթահարելու այնպիսի



բացասական երևույթները, ինչպիսիք են կաշառակերությունը, սպեկուլյացիան, ընչաքաղցությունը, պրոտեկցիոնիզմը:

ՍՄԿԿ Կենտկոմը Հայաստանի կոմկուսի Կենտկոմին, կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրել է՝ ամրապնդելով և զարգացնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման աշխատանքում եղած դրական միտումները, գործուն միջոցներ ձեռնարկել նշված թերությունների վերացման համար: Կուսակցության պահանջներին խստիվ համապատասխանեցնել մասսաների շրջանում կազմակերպչական ու գաղափարախոսական ամբողջ գործունեության բովանդակությունը, ոճն ու մեթոդները: Առաջնահերթ կարևորության խնդիր համարել գաղափարադաստիարակչական աշխատանքի բարելավումը անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում, բրիգադներում ու ֆերմաներում:

Պրոպագանդան և ագիտացիան, աշխատավորների սոցիալիստական մրցությունը նպատակամղել 1984 թվականի և ամբողջությամբ վերցված հնգամյակի պլանների անպայման կատարմանը, ՍՄԿԿ XXVII համագումարի արժանավայել դիմավորմանը:

Ըստ ամենայնի տարածել անձնական հնգամյա առաջադրանքները մինչև մեծ Հաղթանակի 40-ամյակը կատարելու պարտավորություն ստանձնած առաջավոր աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունը: Կուսակցական ու հասարակական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների, մասսայական ինֆորմացիայի միջոցների ուշադրության կենտրոնում պետք է մշտապես գտնվեն էկոնոմիկայի ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների հետագա ավելացման, հանրապետության գիտատեխնիկական և արտադրական պոտենցիալի առավել արդյունավետ օգտագործման հարցերը: Ապահովել բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների, գիտնականների լայն ներգրավումը տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի պլանները կազմելու գործում:

Կուսակցական կոմիտեները, սովետական, արհմիութենական, տնտեսական մարմինները պարտավոր են ամենօրյա հոգատարություն ցուցաբերել աշխատավոր մարդու նկատմամբ: Հասնել բնակարանների, սոցիալ-կուլտուրական օբյեկտների կառուցման պլանների անշեղ կատարման, բարելավել առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքը, հատուկ ուշադրություն նվիրել կոմունալ տնտեսության և կենցաղային սպասարկման զարգացմանը: Հանրապետության կապի և առողջապահության մինիստրությունների օրինակով աշխատավորական կոլեկտիվներում կանոնավոր կերպով անցկացնել մարդկանց պահանջմունքներն ու կարիքները բավարարելու կոչված գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավար աշխատողների հաշվետվություններ: Ամրապնդել դաստիարակչական աշխատանքի նյութական բազան, 1985 թվականին ավարտել շրջաններում և քաղաքներում կուլտուր-մարզական համալիրների ըստեղծումը:

Ժողովրդական վերահսկիչների համամիութենական խորհրդակցությունում ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ճառի բովանդակած ցուցումներին համապատասխան, կուսակցական կոմիտեները, կուսկազմակերպությունները պետք է ուժեղացնեն պայքարը բացասական դրսևորումների դեմ, սոցիալիստական օրինականության ու բարոյականության խախտումների դեմ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է աշխատավորների

մեջ հետևողականորեն ձևավորեն մարքս-լենինյան աշխարհայացք, դաստ-կարգային մոտեցում հասարակական երևույթների նկատմամբ, քաղաքական բարձր զգոնություն, նրանց դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ-ի ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության ոգով: Ղեկավար կադրերին ընտրելիս և տեղաբաշխելիս ավելի լրիվ հաշվի առնել բնակչության ազգային կազմը:

Բարձրացնել կուսակցական ու տնտեսագիտական ուսուցման գաղափարատեսական մակարդակը և գործունեությունը, ուժեղացնել պրոպագանդիստների, ագիտատորների, դասախոսների կազմը, զարգացնել հասարակական հիմունքներով գործող քաղլուսավորության կաբինետների ցանցը: Մասսայական-քաղաքական աշխատանքում ավելի լայնորեն ներգրավել Սովետական Միության հերոսներին ու սոցիալիստական աշխատանքի հերոսներին, կադրային բանվորներին, կուսակցության, պատերազմի, աշխատանքի վետերաններին: Մասսայական ինֆորմացիայի միջոցները պետք է վառ ու համարձակ կերպով պրոպագանդեն սովետական ապրելակերպը, ավելի համառորեն հանդես գան անտնտեսվարության, անկարգապահության, տեղայնության դեմ: Գործուն միջոցներ ձեռնարկել բարելավելու բնակչության աթեիստական դաստիարակությունը, ավելի ակտիվորեն արմատավորել նոր, սոցիալիստական ծիսակատարությունները: Կազմակերպել գիտական աթեիզմի մասնագետների պատրաստումը բուհերում, մարքսիզմ-լենինիզմի համալսարանում: Հասարակագետ գիտնականներին նպատակամղել խորապես ուսումնասիրելու տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր կյանքը, հիմնավորված հանձնարարականներ մշակելու գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման վերաբերյալ՝ հաշվի առնելով հանրապետության յուրահատկությունները:

ՍՄԿԿ Կենտկոմը նշել է, որ կուսակցական, սովետական մարմինները, կոմերիտական կազմակերպությունները պարտավոր են ավելի շատ հոգատարություն ցուցաբերել մատաղ սերնդի քաղաքացիական հասունացման նկատմամբ, միավորելով ընտանիքի, ուսումնական հաստատությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը: Պատանիների ու աղջիկների մեջ ձևավորել գաղափարաքաղաքական վսեմ հատկանիշներ, ինտերնացիոնալիստական խոր գիտակցություն: Հաստատակամորեն և նպատակասլաց իրականացնել հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը, ստեղծել արտադրական ուսուցման ժամանակակից բազա: Մասնագետների և բանվորների պատրաստումը համապատասխանեցնել ժողովրդական տնտեսության պահանջմունքներին: Սատարել երկրի հարվածային կառույցներում աշխատելու երիտասարդության ձգտմանը:

Անհրաժեշտ է, որ հանրապետության կոմկուսի Կենտկոմը, կուսակցական կոմիտեները գիտական և ստեղծագործական մտավորականության շրջանում մշտապես հաստատեն գաղափարական, բարոյական և գեղագիտական խստապահանջության մթնոլորտ: Ընդլայնել սոցիալական պատվերի պրակտիկան, զորավիգ լինել մշակույթի վարպետների ստեղծագործական արգասաբեր որոնումներին: Խորհուրդ տալ գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինեմատոգրաֆիստների միություններին՝ զարգացնելու շեֆական կապերը աշխատավորական կոլեկտիվների, սովետական բանակի ռազմիկների, սահմանապահների հետ: Ավելի ակտիվորեն պրոպագանդել բազմազգ սոցիալիստական մշակույթի նվաճումները:

Հանրապետության կոմկուսի Կենտկոմին, կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին առաջարկված է գործնականում իրականացնել համակարգային, կոմպլեքսային մոտեցում դաստիարակության հարցերի նկատմամբ, արմատավորել հեռանկարային, ծրագրանպատակային պլանավորում: Բարելավել գաղափարախոսական հանձնաժողովների գործունեությունը գաղափարական ազդեցության բոլոր միջոցների կոորդինացման, դրական փորձի ընդհանրացման և տարածման ուղղությամբ: Բարձրացնել կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարների, ճյուղային բաժինների, հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների պատասխանատվությունը մարդկանց հետ տարվող քաղաքական աշխատանքի համար, գաղափարախոսական, կազմակերպչական և տնտեսական գործունեության սերտ միասնության ապահովման համար:

Ղեկավարների նկատմամբ ավելի խստապահանջ լինել կուսակցական կյանքի նորմերը խախտելու, աշխատավորների դաստիարակության գործում անձնական մասնակցությունից խուսափելու համար: Կատարելագործել գաղափարախոսական կադրերի տեսական պատրաստությունը և պրոֆեսիոնալ վարպետությունը: Կարգավորել կուսկազմակերպությունների քարտուղարների գաղափարադաստիարակչական աշխատանքի գծով տեղակալների, կուսակցական խմբերի կազմակերպիչների և արտադրական բրիգադների կուսկազմակերպիչների ուսուցումը:

ՍՄԿԿ Կենտկոմը հանրապետության կոմկուսի Կենտկոմին, Մինիստրների խորհրդին պարտավորեցրել է լրացուցիչ միջոցներ ձեռնարկել աշխատունակ բնակչությանը հանրային արտադրության մեջ ներգրավելու համար, ակտիվացնել բանվորների միջհանրապետական կազմակերպված հավաքագրման աշխատանքը: ՍՍՀՄ պետպլանին և ՍՍՀՄ աշխատանքի ու աշխատավարձի հարցերի պետական կոմիտեին հանձնարարական է տրված շահագրգռված մինիստրությունների հետ համատեղ 1986—1990 թվականների պլանի նախագծերում և հեռանկարում նախատեսել հանրապետությունում արդյունաբերության աշխատատար ճյուղերի առավել արագ զարգացում:

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿԻՉԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՎՍԵՄ ՊԱՐՏՔԸ

## Ընկեր Կ. Ու. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ճառը ժողովրդական վերահսկիչների համամիութենական խորհրդակցությունում 1984 թ. հոկտեմբերի 5-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Դուք հավաքվել եք, որպեսզի քննարկեք բացառիկ կարևոր հարցեր՝ ժողովրդական վերահսկողության հետագա ակտիվացման, նրա արդյունավետության բարձրացման հարցերը։ Հավաքվել եք, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմն է համարում՝ շատ ճիշտ ժամանակին։ Եվ ահա թե ինչու։ Մենք թևակոխել ենք մի այնպիսի ժամանակաշրջան, երբ կյանքը տիրաբար նոր, բարձր պահանջներ է ներկայացնում այն բոլոր օղակների աշխատանքի որակին, որոնցից գոյանում է մեր հասարակության կառավարման համակարգը։ Իսկ ժողովրդական վերահսկողությունը այդ համակարգի անկապտելի և, ես կասեի, միանգամայն անփոխարինելի մասն է։ Այնպես որ, ձեզ վրա նույնպես լիովին տարածվում է ժամանակի հրամայական պահանջը՝ ձեր գործունեությունը բարձրացնելու այսօր մեր առջև ծառացած մեծ խնդիրների մակարդակին։*

*Հենվելով նյութական ու հոգևոր հզոր պոտենցիալի վրա, մենք ջանքերը կենտրոնացնում ենք արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի ու շինարարության բոլոր ճյուղերի համակողմանի զարգացման վրա, արտադրության ինտենսիվացումն արագացնելու վրա, այն բանի վրա, որ ապահովվի սովետական գիտության ու տեխնիկայի, կրթության ու առողջապահության, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նոր վերելք։ Ներկայիս բարդ ու լարված միջազգային իրադրությունը մեզ պարտավորեցնում է ամրապնդել երկրի պաշտպանունակությունը, բարձրացնել մեր զինված ուժերի մարտունակությունը։*

*Մենք ընդհուպ մոտեցել ենք այնպիսի բնագծերի, որոնք որոշակի իմաստով բեկումնային բնույթ կունենան։ Խոսքը վերաբերում է այնպիսի որակական տեղաշարժերի, որոնք նախապատրաստվել են մեր զարգացման ողջ ընթացքի շնորհիվ, ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի հետագա պլենումների որոշումների հիման վրա կուսակցության ու ժողովրդի ծավալած հսկայական ստեղծագործական աշխատանքի շնորհիվ։*

*Այդպիսի տեղաշարժերը հասունացել, անհրաժեշտ են դարձել արտադրողական ուժերի զարգացման ասպարեզում, դրանք գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա վերակառուցելու գործում։ Առանց այդպիսի տեղաշարժերի անկարելի է յոլա գնալ նաև էկոնոմիկայի կառավարման համակարգում, նրա պլանավորման գործում։ Պետք է էապես բարելավել մեր տնտեսական մեխանիզմը։ Պետք է որակապես նոր աստիճանի բարձրացվի ժողովրդի բարեկեցությունը։ Եվ այս ամենը, անշուշտ, աներևակայելի է առանց սովետական մարդկանց՝ բոլորի և յուրաքանչյուրի, գիտակցական, շահագրգիռ, նախաձեռնողական աշխատանքի։ Հետևաբար՝ այստեղ նույնպես անհրաժեշտ է տեղաշարժ. հարկավոր է, որ մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը ոչ թե սոսկ աճի, ինչպես եղել է մինչև հիմա, այլ բառիս բուն իմաստով բազմապատկվի։*



*Հենց այս ամենն է, ընկերնե՛ր, գոյացնում այն պրոցեսի կենդանի հյուսվածքը, որը մենք անվանում ենք մեզ մոտ կառուցված սոցիալիզմի կատարելագործում։ Հենց այս կապակցությամբ ծագող պրոբլեմներին է այժմ սևեռված կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի ուշադրությունը, դրանց է ուղղված նրանց միտքը։ Եվ սա այն գլխավորն է, ինչը ուղղություն է տալիս ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստությանը, կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի վրա կատարվող աշխատանքին։ Եվ հետևաբար տնտեսական ու սոցիալական զարգացման հերթական հնգամյա և ավելի երկարաժամկետ պլանների նախապատրաստման աշխատանքին։*

*Մենք պետք է ընդունենք մեծ որոշումներ, հաստատենք մեծ պլաններ։ Ուրեմն պետք է վաղօրոք հոգանք դրանց կատարման երաշխիքների մասին։ Այդ երաշխիքների թվում աչքի ընկնող տեղ է պատկանում լենինաբար կազմակերպված ժողովրդական վերահսկողությանը։ Ուղղակի ասենք՝ մեր երկրի հետագա առաջընթացի մեջ ժողովրդական վերահսկողության աշխատանքով շատ, անչափ շատ բան է պայմանավորված։ Այսպիսի հետևության մեզ պարտավորեցնում են թե՛ մեր անցյալի ողջ փորձը և թե սոցիալիզմի գիտական տեսությունը։*

*Ինչպես բոլորս էլ լավ գիտենք, Վ. Ի. Լենինը հսկայական նշանակություն էր տալիս գործուն վերահսկողության հաստատմանը, այդ աշխատանքում բանվորների, աշխատավորների զանգվածային ներգրավմանը։ Այստեղ նա տեսնում էր կուսակցության, սովետների, արհմիությունների քաղաքական ու կազմակերպչական գործունեության բազում տեղամասերից ոչ թե սոսկ մեկը։ Լենինի միտքը ավելի հեռու և ավելի խոր էր գնում։ Նրա միտքը ժողովրդական վերահսկողությունն անխզելիորեն կապում էր սոցիալիստական կարգերի բուն էության հետ, դրանց դեմոկրատական բնույթի հետ։*

*Եկեք մի հետադարձ հայացք գցենք մեր երկրում սոցիալիզմի կառուցման ու զարգացման պատմությանը։ Դժվար չէ նկատել, որ այդ ճանապարհի յուրաքանչյուր առավել պատասխանատու հատվածում վերահսկողության պրոբլեմը միշտ էլ առաջադրվել է ամենահրատապ պրոբլեմների թվում։ Հոկտեմբերի մատույցներում բանվորական վերահսկողության լենինյան գաղափարը հաստատվեց հեղափոխական պրոլետարիատի մոբիլիզացնող լոզունգների շարքում։*

*Քաղաքացիական պատերազմի և տնտեսական քայքայման պայմաններում երիտասարդ սովետական իշխանությունը, ձեռնամուխ լինելով նոր հասարակության կառուցմանը, վստահորեն առաջ էր ընթանում՝ զինված լինելով Լենինի պարզորոշ ցուցումով՝ «Հաշվառում և վերահսկողություն, ահա գլխավոր տնտեսական խնդիրը...»։ ՆԷՊ-ի տարիներին, երբ էկոնոմիկայում լուծվում էր «ով՝ ում» հարցը, դասակարգային, իրոք, ժողովրդական վերահսկողության նկատմամբ կուսակցության հոգատարությունը նորից առաջին պլանում էր։ Հենց այդ ժամանակ, արտահայտելով ամրապնդվող սոցիալիստական հասարակության ամենակենսական պահանջմունքը, Լենինը հանդես է գալիս «Ինչպես վերակազմենք բանգյուղտեսչությունը» ծրագրային նշանակություն ունեցող իր աշխատությամբ։ Մեր պետական ու հասարակական վերահսկիչ մարմինների՝ լենինյան գաղափարների վրա խարսխված գործունեությունը տասնամյակից տասնամյակ ծանրակշիռ ավանդ է ներդնում սոցիալիստական արարման գործում։*

*Ամեն մեկի համար պարզ է. այն հասարակությունը, որի բնույթի մեջ դրված է ոչ թե տարերային, այլ պլանային, կազմակերպված սկզբունքը, այդպիսի հասարակությունը հեռու չէր գնա առանց այն բանի սիստեմատիկ ստուգման, թե ինչպես են իրականացվում իր կանխանշած նպատակները։ Իսկ մենք շատ ենք առաջ ընթացել սոցիալիստական շինարարության ասպարե-*

զում: Երկիրը թևակոխել է զարգացած սոցիալիզմի փուլը: Եվ այն բանում, որ մենք դրան հասել ենք, ժողովրդական վերահսկողությունը նկատելի և, նորից եմ կրկնում, յուրովի անփոխարինելի դեր է խաղացել:

Միանգամայն օրինաչափ է, որ հենց արդի պայմաններում, հենց զարգացած սոցիալիզմի փուլում են զգալիորեն ընդլայնվում ժողովրդական վերահսկողության իրավունքներն ու հնարավորությունները: Եվ, իհարկե, աճում է նրա պատասխանատվությունը: Այս բանը պարզորոշ արտահայտված է ՍՍՀՄ սահմանադրության մեջ, դրա հիման վրա ընդունված ժողովրդական վերահսկողության մասին օրենքում: Իսկ ամենակարևորն այն է, որ դա շոշափելի և բեղմնավոր ազդեցություն է գործում մեր պետական, կառավարչական, տնտեսական, հասարակական ամենօրյա պրակտիկայի վրա:

Դուք, ընկերնե՛ր, ներկայացնում եք ժողովրդական վերահսկիչների տասը միլիոնանոց ջոկատը: Տասը միլիոնը արդյոք շա՞տ է, թե՞ քիչ: Թիվը, անշուշտ, պատկառելի է, որ ձեր աշխատանքը մեծ ծավալի է հասել, և դրան մասնակցելը դարձել է իրոք մասսայական: Սա լավ է:

Բայց եկեք ուշադրություն առնենք ո՛չ միայն ձեռք բերվածը: Եկեք ներկա վիճակը համադրենք սոցիալիզմի գիտական տեսության բարձրագույն պահանջների հետ: Լենինը սովորեցնում է, որ սոցիալիստական հասարակության մեջ վերահսկչական աշխատանքը պետք է դառնա իրոք համաժողովրդական: Սովետական իշխանության արշալույսին հայացք գցելով ապագային, նա գրել է, որ վերահսկողությունը պետք է «իրականացվի սկզբում բանվորական կազմակերպությունների, հետո անխտիր ամբողջ բնակչության միջոցով»: Ընդսմին, «անխտիր» բառը նա ընդգծել է: Իսկ այժմ կուսակցությունը հարցը դնում է նույն կերպ՝ լենինաբար: Պետք է ձգտել հենց այդ նպատակին: Պետք է, որ իրեն ժողովրդական վերահսկիչ զգա յուրաքանչյուր, ուշադրություն դարձրեք, յուրաքանչյուր սովետական մարդ, որ նա մտածի և գործի այդ քաղաքացիական բարձր պաշտոնին համապատասխան:

Կարծում եմ, դուք ինձ ճիշտ եք հասկանում: Խոսքն ամենևին էլ չի վերաբերում ժողովրդական վերահսկողության հաստիքների ընդլայնմամբ զբաղվելուն նրա հազարավոր կոմիտեներում:

Թեպետև մենք լավ գիտենք, որ մեզանում ազատված աշխատողները, հատկապես շրջանային, քաղաքային օղակում շատ չեն: Այստեղ կարևորը թվերը չեն: Կարևորը գործի էությունն է, իսկ դա այն է, որ ժողովրդական վերահսկողության զարգացումը իրենից ներկայացնում է սոցիալիստական դեմոկրատիայի խորացման անհրաժեշտ ուղղություններից մեկը:

Մեր դեմոկրատիան յուրաքանչյուրին իրավունք է տալիս և յուրաքանչյուրին պարտավորեցնում է ակտիվորեն հանդես գալ որպես երկրի տեր: Եվ դուք ձեր փորձից գիտեք, որ վերահսկողությանը մասնակցելը լավ է սովորեցնում թե՛ օգտվել այդ իրավունքից և թե գիտակցել այդ պարտականությունը: Ահա այն գլխավոր, կարելի է ասել ստրատեգիական տեսանկյունը, որից կուսակցությունը դիտում է ձեր աշխատանքին նորանոր միլիոնավոր աշխատավորների մասնակից դարձնելու անհրաժեշտությունը: Թող նրանք թեկուզև ոչ ուղղակի ըստ կոչման, թեկուզ իրենց հասարակական գործունեության ոգով ու բովանդակությամբ, սկզբում գոնե սեփական աշխատանքային կոլեկտիվների շրջանակներում դառնան իսկական խստապահանջ ժողովրդական վերահսկիչներ:

Թող նրանք, այս բանը կասեմ Լենինի բառերով, «ամենահասարակ ըղբաղմունքներից... աստիճանաբար ավելի կարևոր դերերի անցնեն պետական գործերում»:

Ռեալությունը մեր դեմոկրատիայի անգին հատկանիշն է: Եվ հենց դրա ռեալ զարգացմանն ու խորացմանն է կուսակցությունը հսկայական նշանակություն տալիս: Ձեզ քաջ հայտնի է, թե այս հարցը ինչպիսի լրջությամբ առաջադրեց Կենտկոմի 1984 թվականի ապրիլյան պլենումը: Պլենումի որոշումներն անմիջականորեն նպատակամղված են սովետների աշխատանքի ակտիվացմանը: Այստեղ խնդիրն այն է, որ պետական իշխանության այդ



մասսայական մարմինները սովորեն գործնականում օգտագործել իրենց բոլոր սահմանադրական լիազորությունները: Կուսակցությունը նույն խնդիրը հրատապ է համարում նաև արհմիությունների, կոմերիտմիության, աշխատավորական կոլեկտիվների համար: Հավասարապես՝ նաև ժողովրդական վերահսկողության համար: Ընդհանուր առմամբ խոսքն այն մասին է, որ ամբողջ լայնությամբ ծավալվի ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ստեղծարար ուժը: Հենց այս է մեր հասարակության քաղաքական սիստեմի կատարելագործման իմաստը: Հենց սա է այդ սիստեմի մերձեցումը սոցիալիզմի իդեալին:

Առհասարակ, ընկերնե՛ր, սոցիալիզմի բարձրագույն նորմերին հավասարվելը մեզ մոտ պետք է կանոն դառնա: Դրանք բնավ չի կարելի մոռանալ ձեռք բերվածը գնահատելիս: Դրանց հետ պետք է համադրել թե՛ այսօրվա պրակտիկան և թե ապագայի պլանները: Իսկ ձեր գործունեության համար դա, կարելի է ասել, առաջին պատվիրանն է: Չէ՛ որ ժողովրդական վերահսկողությունը վերջին հաշվով գոյություն ունի հենց նրա համար, որ օգնի ի հայտ բերելու և վերացնելու այն ամենը, ինչը հակասում է սոցիալիզմի բնույթին, չի համապատասխանում նրա սկզբունքներին:

Վերցնենք, օրինակ, սոցիալիզմի՝ մեզ համար սուրբ սկզբունքը. յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի: Սա սոցիալական այն արդարության հիմքերի հիմքն է, որը հենց մեր բանվոր դասակարգը, մեր ժողովուրդը պատմության մեջ առաջին անգամ երազանքից վերածեցին կենդանի իրականության: Բայց գիտակցելով այդ նվաճման ողջ վեհությունը, չի կարելի մոռանալ, որ դա հարկավոր է թե՛ պահպանել և թե զարգացնել: Մենք ունենք բավականաչափ փորձ, որն ուսուցանում է, որ «ըստ աշխատանքի» սկզբունքի պահպանումը հատուկ հոգատարություն է պահանջում:

Այլապես հարկ կլինի գործ ունենալ դրա խախտումների հետ: Այնպիսիների, որոնք քիչ չեն վնասում մեր էկոնոմիկային, նաև այնպիսիների, որոնք խորապես զայրացնում են սովետական մարդկանց, բնավ չեն համապատասխանում արդարության մեր ըմբռնմանը:

Այդ ի՞նչ երևույթներ են: «Համահարթման միտումներ», «միջոցներին չհամապատասխանող ապրուստ». ահա բառեր, որոնցով դրանք մեզ մոտ ամենից հաճախ են բնութագրվում: Դրանք, ես կասեի, մեղմ բառեր են: Թերևս՝ չափից դուրս ներբանկատ, եթե չնայենք այն բանի էությանը, թե այդ բառերի ետևում ինչեր կան:

Համահարթման միտումներն այն միտումներն են, երբ բարերարություն են անում անբանի, խոտանարարի նկատմամբ և միաժամանակ նեղացնում, ցավ են պատճառում լավ, բարեխիղճ աշխատողին: Դուք գիտեք, որ պարգևավարձը հաճախ դեռևս ասենք միատեսակ չափով է տրվում թե՛ արտադրության առաջավորին և թե ետ մնացողին: Սրա վրա, ցավոք, շատերը աչք են փակում: Ասենք՝ ժողովրդական վերահսկողությունն էլ երբեմն անցնում է նման փաստերի կողքով, դրանք ըստ երևույթին դասելով մանրուքների ու եզակի երևույթների շարքը, իսկ իրականում դա կոպիտ շեղում է սոցիալիզմի հիմնարար սկզբունքից:

Նրա համար, ով աշխատում է ուժերի լիակատար նվիրումով, մեզանում միշտ և ամենուրեք պետք է շոշափելի առավելություններ ապահովված լինեն թե՛ աշխատավարձի հարցում, թե՛ բնակարան, ուղեգրեր, սոցիալական այլ բարիքներ բաշխելիս: Ես կրկնում եմ այն, ինչի մասին արդեն առիթ եմ ունեցել խոսելու: Բայց սա ձեր առջև հատկապես կրկնում եմ, որովհետև ժողովրդական վերահսկողության խնդիրն է մշտապես նայել, թե պրակտիկայում ինչպես են պահպանվում բաշխման սոցիալիստական համակարգի պարտադիր նորմաները: Ստուգել, թե, Լենինի բառերով ասած, սպառման չափանիշը կոնկրետ ինչպես է շաղկապվում աշխատանքի չափանիշի հետ:

Այժմ «միջոցներին չհամապատասխանող ապրուստ» տխրահռչակ երևույթի մասին: Իսկ եթե իրերը կոչենք իրենց անուններով՝ պորտաբուծության

երևույթների մասին՝ իր ո՛չ միայն հակաբարոյական, այլև երբեմն նաև հանցավոր էությամբ հանդերձ։ Ինչ մեղքներս թաքցնենք, առայժմ չի հաջողվել վերջ տալ այդ երևույթներին։ Դեռևս չեն վերացել այնպիսինները, որոնք թե՛ ձգտում են և թե հաջողացրել են իրենց բարեկեցությունը դասավորել ուրիշների հաշվին, հասարակության հաշվին։ Պարզ է, որ նման երևույթը մեր սոցիալիստական համակեցության ոչ մի նորմի հետ համատեղելի չէ։

Վերջին տարիներս մենք ինչպես հարկն է ձեռնամուխ ենք եղել այն բանին, որ, այսպես ասած, կարգուկանոն հաստատենք տանը։ Խնդիրն առաջադրված է հստակորեն՝ վերջ տալ կաշառակերությանն ու սպեկուլյացիային, սոցիալիստական սեփականության վատնումներին ու հափշտակումներին, պաշտոնեական չարաշահումներին։ Մենք խիստ ուժեղացրել ենք պայքարը օրինականությունն ամրապնդելու, մեր իրավապահպան մարմինների աշխատանքը բարելավելու, ղեկավար աշխատողների պատասխանատվությունը բարձրացնելու համար, ընդհանուր կազմակերպվածության ու կարգապահության համար։ Կուսակցության ու պետության կենտրոնական մարմիններն այդ ասպարեզում գործնական քիչ միջոցներ չեն ձեռնարկել։ Որոշ դեպքերում նույնիսկ բավականաչափ կտրուկ միջոցների են դիմել, ինչպես օրինակ՝ Կրասնոդարի երկրամասի, Ուզբեկստանի, Ռոստովի մարզի մի շարք աշխատողների նկատմամբ։ Մեր ժողովուրդն այս գծին հավանություն է տալիս, պաշտպանում է այն։ (Ծափահարություններ)։ Բայց ահա թե ինչ հարց է ծագում. արդյոք բոլո՞րն են համակվել այն գիտակցությամբ, որ հարկավոր է այդ գիծը պաշտպանել մշտապես, սիստեմատիկաբար և ոչ թե ընդհանրապես, ոչ թե միայն հանդիսավոր հայտարարություններով, այլ կոնկրետ գործողություններով։ Այս հարցն ուղղված է նաև ձեզ՝ ժողովրդական վերահսկողության ընկեր ղեկավարներ և ակտիվիստներ։ Ձեզ՝ հատկապես։ Որովհետև ժողովուրդը, բախվելով իր արժանապատվությունն ու խիղճը վիրավորող երևույթների, լիակատար հիմունքով զարմանում է, թե այդ ո՞ւր են նայում իր, այսինքն՝ հենց ժողովրդական վերահսկիչները։ Նույն պահանջը, իհարկե, ներկայացվում է նաև ժողովրդական դեպուտատների սովետներին, իրավապահպան մարմիններին, պետական ու հասարակական մյուս կազմակերպություններին։ Բայց դա բնավ չի նվազեցնում այն պատասխանատվությունը, որ ընկած է ձեր ուսերին։ Ձեր ուղղակի պարտքն է ձեր մեծ իրավունքները վճռականորեն գործի դնել այնտեղ, որտեղ թերությունների ու անկարգությունների դեմ տակավին պայքարում են միայն ճառերով և ոչ թե գործերով։

Լուրջ անհանգստություն է պատճառում, ընկերներ, այն միջոցառումների ցածր արդյունավետությունը, որ երկար տարիներ ձեռնարկվում են ալկոհոլի չարաշահման դեմ։ Ոգելից խմիչքների նկատմամբ եղած հակումը կործանում է մարդկանց առողջությունը, փորձանք է դառնում տան համար։ Հարբեցողությունը քիչ վնաս չի պատճառում արտադրությանը։ Եվ առհասարակ ստվեր է գցում մեր ապրելակերպի վրա։

Ըստ երևույթին հասել է ավելի հաստատակամ և ավելի կշռադատված գործողությունների դիմելու ժամանակը, որպեսզի հասարակությունն ազատվի այդ մեծ չարիքից։ Հավատացած եմ, որ ժողովրդական վերահսկողությունը ևս իր ամբողջ կարելին կանի, որպեսզի հարբեցողության դեմ մղվող պայքարը դառնա արդյունավետ, որ այդ պայքարը չհանգի ձևական «միջոցառումների»։

Վերահսկողությունը նախ և առաջ կենդանի աշխատանք է մարդկանց հետ։ Պրակտիկան համոզում է, թե այստեղ որքան կարևոր է հմուտ մոտեցումը՝ խիստ, պահանջկոտ և միևնույն ժամանակ բարյացակամ մոտեցումը։ Ժողովրդական վերահսկողության ներկայացուցիչներին վայել չեն հախուռն անվստահությունը և կասկածամտությունը։

Վերահսկիչի աշխատանքը չի կարող սպառվել նրանով, որ ի հայտ բերվի մեր կյանքում եղած մեծ ու փոքր վրիպումները և չինայի մեղավորներին։ Լենինը, ինչպես բոլորս էլ հիշում ենք, ընդգծել է, որ վերահսկողությունը կոչված է «ոչ միայն և նույնիսկ ոչ այնքան «որսալ», «մերկացնել»...



որքան կարողանալ ուղղել», «ժամանակին կատարել անհրաժեշտ գործնական փոփոխություններ, դրանք կենսագործել իրականում»։

Ժամանակին նկատել թերացումները, կանխել դրանց վերաճումը խոշոր վիժեցումների՝ ահա թե հատկապես ինչն է կարևոր։ Տեշտը պետք է դնել այն բանի վրա, որ ամենամանրակրկիտ կերպով ուսումնասիրվեն թերությունների, չարաշահումների պատճառները։ Ուսումնասիրել և այդ հիման վրա կոլեկտիվ կերպով ձգտել այնպիսի միջոցառումների, որոնք ընդունակ լինեն կանխելու բացասական երևույթները։ Եվ, իհարկե, ամեն մի ստուգում պետք է անպայման հասցնել իր ավարտին, չնահանջել, քանի դեռ դրությունն ուղղված չէ։ Ուրեմն՝ ժողովրդական վերահսկիչի աշխատանքում պետք է միաձուլված լինեն ստուգումը, թերությունների կանխումը և ուղղումը։

Ձեր գործունեության մի զգալի, եթե ոչ գերակշիռ մասը, ընկերնե՛ր, կապված է էկոնոմիկայի պրոբլեմների հետ, նրա արդյունավետության բարձրացման հոգսերի հետ։ Եվ դա բնական է։ Էկոնոմիկայի ոլորտը մեզ համար հանգուցային է։

Այժմ այդ ոլորտում ամենաառաջին խնդիրն այն է, որ ըստ արժանվույն ավարտենք ընթացիկ հնգամյակը։ Մեզ հաջողվել է հաղթահարել անցյալի շատ թերացումներ։ Բայց պլանային առաջադրանքները, ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար դեռևս անհրաժեշտ է շատ լուրջ ջանքերի դիմել։ Այդպիսի ջանքեր մենք սպասում ենք նաև ժողովրդական վերահսկողությունից, որը պետք է նպաստի առկա ռեզերվների առավելագույն օգտագործմանը։ Եվ այդ ռեզերվները նախ և առաջ գտնվում են աշխատանքի կազմակերպման հետագա բարելավման, կարգապահության ամրապնդման, խնայողության ռեժիմի ամրապնդման մեջ։

Աշխատանքում հստակության և կազմակերպվածության համար մեր ծավալած պայքարը նկատելի պտուղներ է տվել։ Արդեն ավելի լավ են կատարվում ձեռնարկությունների պայմանագրային պարտավորությունները։ Էականորեն կրճատվել են պարապուրդները, ուշացումները, գործալքումները։ Արտադրությունը դրանից իսկույն և շոշափելի կերպով շահեց։ Բայց, այնուամենայնիվ, մատակարարումների մի մասը դարձյալ չի կատարվում, աշխատաժամանակի մի մասի կորուստ է տեղի ունենում։ Այս երկու պատճառներով և ըստ անցյալի արդյունքների մենք այս տարի ևս պակաս ենք ստանում միլիարդավոր ռուբլիների արդյունաբերական արտադրանք։

Տակավին պակասում է կազմակերպվածությունը կապիտալ շինարարության մեջ։ Շինարարական աշխատանքները երբեմն կատարվում են որակական ցածր մակարդակով, վիժեցվում են դրանց կատարման ժամկետները։ Դա ցավագին հարված է հասցնում թե՛ մեր արտադրական պլաններին և թե աշխատավորների անձնական շահերին։ Շինարարության ասպարեզում մերթ այստեղ, մերթ այնտեղ տեղի ունեցող խափանումները և կիսատ-պռատ գործերը սրում են բնակարանների, դպրոցական շինությունների, մանկապարտեզների, մանկամսուրների պակասը։ Վերջերս, ինչպես գիտեք, Կենտկոմի քաղբյուրոն միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս է նախատեսել կապիտալ շինարարության մեջ վիճակն ուղղելու համար։ Կարևոր է, որ այդ միջոցառումներն անշեղորեն կենսագործվեն։ Եվ այստեղ մենք հույս ունենք ստանալու ժողովրդական վերահսկիչի ակտիվ աջակցությունը։

Տնտեսական գործերում անկազմակերպվածության դրսևորումներից մեկը հումքի, նյութերի, էներգիայի նկատմամբ վատնողական, ոչ խնայողական վերաբերմունքն է։ Վստահ եմ, որ ձեզանից յուրաքանչյուրի սիրտը ցավում է, երբ տեսնում եք, թե ինչպես են ժանգոտում գործարանների բակերում թափված արժեքավոր սարքավորումները։ Իսկ պարարտանյութերի՝ ժամանակին դաշտեր չփոխադրված հսկայական կույտե՞րը։ Իսկ տխրահռչակ ջահե՞րը, որտեղ անհամար խորանարդ մետրերով գազ է այրվում։ Նման անտնտեսվարությունը բացեիբաց պահանջում է ժողովրդական վերահսկիչի ակտիվ միջամտությունը։

Խնայողության համար մղվող պայքարում մենք դրական փորձ ունենք։ Բերեմ թեկուզ այսպիսի օրինակներ։ Անցած երեք տարում վառելիքի և էներ-

գիայի խնայողությունը կազմել է դրանց արտադրության աճի կեսը։ Իսկ սև մետաղների գլանվածքի գծով այդ ցուցանիշը գերազանցել դրա թողարկման ամբողջ աճը։ Ժողովրդական վերահսկողությունը ծանրակշիռ ավանդ է ներդրել այդ նվաճումների մեջ։ Ուրեմն՝ եկեք, ընկերներ, ըստ ամենայնի զարգացնենք դրանք։

Խնայողությունը պետք է դառնա մեր ողջ տնտեսական կյանքի անխախտ օրենքը։ Բայց այսօր կուզենայի ձեր ուշադրությունը հատկապես հրավիրել այն բանի վրա, թե որքան կարևոր է այդ օրենքի խստիվ կատարումը գյուղատնտեսության մեջ։ Դյուրին աշխատանքով չէ, որ ձեռք է բերվում բերքը, և ոչ մի արդարացում չի կարող ունենալ նա, ով թույլ է տալիս բերքի թեկուզ նվազագույն կորուստներ այն հավաքելիս, փոխադրելիս, պահպանելիս։ Ահա այժմ էլ պետք է շատ հիմնավորապես հոգալ հավաքված բերքի պահպանության մասին, հոգալ և այն մասին, որ չկորցնենք անասնապահության ասպարեզում ձեռք բերվածը։ Հարկավոր է բոլոր միջոցները ձեռնարկել անասունների աճած գլխաքանակի լավ ձմեռում ապահովելու համար։ Ժողովրդական վերահսկողությունն այստեղ կարող է շատ բանով օգնել, շատ բան անել։

Մեզանում, ընկերնե՛ր, արագ է մեծանում կենցաղային սպասարկումների, մանրածախ առևտրի, մարդատար փոխադրումների ծավալը։ Իսկ աշխատավորների կողմից դեռևս քիչ չէ արդարացի դժգոհությունն այստեղ տիրող վիճակի առթիվ։ Դրա համար ամենից հաճախ հիմք են ծառայում հենց այն կարգի ու նորմերի կոպիտ խախտումներ, որոնք պարտադիր են բնակչության սպասարկման աշխատանքում։ Որոշ ձեռնարկություններ ու հիմնարկություններ, որոնք կոչված են մարդու համար ստեղծելու հարմարություններ, նրան իրոք դատապարտում են տառապանքների, ստիպում են հսկայական թանկագին ժամանակ կորցնել և նյարդեր փչացնել։ Ժողովրդական վերահսողությունն անուշադիր չի թողնում մեր կյանքը թունավորող այդ անկարգությունները։ Բայց քանի դեռ դրանք գոյություն ունեն, ըստ երևույթին, հարկավոր է այստեղ գործել ավելի եռանդագին։ Մենք այժմ այնքան փորձ ունենք, որ կարող ենք վաղօրոք իմանալ, թե կարգապահությունն ինչ պայմաններում իրոք կարող է լինել կայուն, իսկ աշխատանքը՝ ներդաշնակ։ Անկարգապահությանը, անտնտեսվարությանը լիովին վերջ տալ հաջողվում է այնտեղ, որտեղ դաստիարակչական միջոցառումները զուգակցվում են աշխատանքի, արտադրության հստակ կազմակերպման հետ։ Վերցնենք, օրինակ, առաջավոր տնտհաշվարկային բրիգադները։ Այստեղ մոռացել են, թե ինչ բան է գործալքումը, այստեղ գիտեն ժողովրդական կոպեկի հաշիվը, այստեղ ի մի են ձուլված գործի նկատմամբ տիրոջ վերաբերմունքը, փոխօգնությունը և խստապահանջ փոխվերահսկողությունը։ Այստեղ, կարելի է ասել, բոլորը տերեր են և բոլորը՝ վերահսկիչներ։

Այդպիսի բրիգադների կազմակերպումն այն տնտեսական պայմանների ստեղծման մեծ ու քրտնաջան աշխատանքի մի մասն է, որ անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության ինտենսիվացումն արագացնելու համար։ Այդ աշխատանքն այժմ ընդգրկում է շատ ուղղություններ, այդ թվում՝ մի շարք ճյուղերում լայնածավալ տնտեսափորձի անցկացումը։ Տնտեսափորձի ընթացքում, ինչպես հայտնի է, պրակտիկայում հղկվում են տնտեսական այն նոր մեխանիզմի տարրերը, որը թույլ է տալիս իրավունքներն ու պատասխանատվությունը ճիշտ բաշխել կառավարման կենտրոնական մարմինների և արտադրական ձեռնարկությունների միջև։ Խոսքն այն մասին է, որ լրջորեն բարելավվեն պլանավորումն ու կառավարման կառուցվածքը, գործի դրվեն իր աշխատանքում յուրաքանչյուր աշխատողի անձնական շահագրգռության և պատասխանատվության հզոր լծակները։

Այս մեծ աշխատանքին կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս։ Կազմվել և գործում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի՝ ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման և նրա արդյունավետության բարձրացման հանձնաժողով։ Տնտեսական մեխանիզմի վերակառուցման հանգամանալի, լավ մտածված առաջարկությունների մշակումը, ինքներդ էլ լավ հասկանում եք, առաջնահերթ կարևորություն ունեցող գործ է։



Ընկերնե՛ր, դուք փորձից գիտեք, որ ժողովրդական վերահսկողության ազդեցությունն ու հեղինակությունը բազմապատիկ աճում են, եթե նա ստանում է կուսակցական կոմիտեների, սովետական իշխանության մարմինների ողջ անհրաժեշտ պաշտպանությունը։ Կուսակցությունն ու պետությունը ժողովրդական վերահսկողությունը դիտում են որպես մեր համակուսակցական, համապետական գործի կարևորագույն տեղամաս, իսկ նրան ամենօրյա օգնություն ցույց տալը՝ որպես իրենց պատասխանատու խնդիրներից մեկը։ Մանավանդ որ այդպիսով բարձրանում է նաև ժողովրդական վերահսկողության դերը որպես կառավարման դպրոցի, սովետական մարդկանց քաղաքացիական ակտիվ դիրքավորման դաստիարակության դպրոցի։

Ահա թե ինչու կուսակցությունն իր բոլոր կոմիտեներից, ղեկավար կոմունիստներից պահանջում է ամենաուշադիր, ամենահարգալից վերաբերմունքը ցուցաբերել ժողովրդական վերահսկիչների նկատմամբ։ Հարկավոր է նրանց հոգատարությամբ օգնել տիրապետելու աշխատանքի լենինյան ոճին, ամեն մի՝ թե՛ մեծ և թե փոքր գործում կոլեկտիվի վրա, շրջապատի մարդկանց գիտելիքների ու փորձի վրա հենվելու, նրանց տրամադրություններն ու պահանջմունքները հաշվի առնելու կարողությանը։ Հարկավոր է, որ յուրաքանչյուր ժողովրդական վերահսկիչ լինի քաղաքական ու պրոֆեսիոնալ բարձր կուլտուրայի օրինակ, ազնվության, սկզբունքայնության, անկաշառության տիպար։ Ժողովրդական վերահսկիչը գործում է ոչ միայն ժողովրդի անունից, այլև հօգուտ ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորի։ Ուստի նրա տված գնահատականները, հետևությունները, նրա ամեն մի քայլը պետք է լինեն անբասիր։ Անբասիր՝ թե՛ գործարարության տեսակետից, թե՛ արդարության տեսակետից և, անշուշտ, մեր սոցիալիստական օրինականության տեսակետից։

Ես արդեն ասացի, որ ժողովրդական վերահսկողության աշխատողները, նրա հսկիչները միշտ պետք է գործը հասցնեն ավարտին, անկյունաքարը դարձնեն, ինչպես ուսուցանել է Լենինը, փաստական կատարման ստուգումը։ Եվ հենց այս գործում է նրանց ամենից շատ հարկավոր կուսակցական կոմիտեների, ժողովրդական դեպուտատների սովետների օգնությունը։ Հարկավոր է նախ և առաջ գործարար, օպերատիվ վերաբերմունք հանդես բերել ժողովրդական վերահսկողության ահազանգերի և առաջարկությունների նկատմամբ։

Ժողովրդական վերահսկողության արդյունավետությունը, անտարակույս, նկատելիորեն կաճի, եթե նա սերտորեն համագործակցի կուսակցական վերահսկողության մարմինների, ժողովրդական դեպուտատների սովետների հանձնաժողովների, հասարակական վերահսկողության ակտիվիստների հետ։

Գաղտնիք չէ, որ իրական վերահսկողությունը երբեմն նենգափոխվում է թղթայինով։ Պատահում է, որ ձեռնարկություններից, հիմնարկություններից պահանջում են անհամար քանակությամբ տեղեկություններ, հաշվետվություններ, գրավոր բացատրություններ։ Այդ թղթերը, որպես կանոն, կազմում են այն մարդիկ, ում աշխատանքն ուզում են ստուգել այդպիսի անպետք եղանակով։ Դրա հետևանքով լույս աշխարհ են գալիս ձևական խուսագրություններ, իսկ երբեմն էլ, Ֆ. Է. Ձերժինսկու արտահայտությամբ՝ «որակյալ փչոցներ»։ Նման կարգի բյուրոկրատական այլանդակությունների դեմ պետք է վճռականորեն պայքարել։

Հավանաբար ավելորդ չի լինի, որ ժողովրդական վերահսկողությանն օգնեն նաև զանազան կարգի ստուգումների կոորդինացման գործում։ Այստեղ առայժմ շատ են չհամաձայնեցված գործողությունները, խառնաշփոթությունը։ Պատահում է, որ գործարանից դեռ չի հասցրել հեռանալ մի հանձնաժողով, արդեն այնտեղ է շտապում մյուսը, մեկ էլ տեսար՝ երրորդը։ Եվ բոլորն էլ՝ նույն հարցերով։ Նման պրակտիկան նյարդայնացնում է աշխատավորական կոլեկտիվներին, նրանց խանգարում է աշխատել։ Մի խոսքով, վերստուգումների կազմակերպումն անհրաժեշտ է կարգավորել։ Դա, ի դեպ, թույլ կտա

բարձրացնել թե՛ ստուգվողների և թե նրանց ստուգողների պատասխանատվությունը։

Առհասարակ, ընկերնե՛ր, կուսակցական ու սովետական մարմինների անհրաժեշտ օժանդակության և օգնության դեպքում մեր ժողովրդական վերահսկողությունը կարող է շատ բան անել պետական ապարատի աշխատանքը բարելավելու համար։ Այն բանի համար, որ այդ աշխատանքից բացառվեն ձևամոլությունը, թղթարարարությունը և քաշքշուկը։

Եվս մի հարց. ժողովրդական վերահսկիչների նկատմամբ, արված դիտողությունների ու առաջարկությունների նկատմամբ նրանց վերաբերմունքի մասին, ում աշխատանքը նրանք ստուգում են։ Պաշտոնատար անձանց բացարձակ մեծամասնությունը, դուք սա գիտեք, ժողովրդական վերահսկիչների ստուգումներն ու հետևությունները, նրանց տված խորհուրդները ընդունում է սկզբունքայնորեն, ինքնաքննադատաբար։ Բայց, դուք սա նույնպես գիտեք, կան աշխատողներ, որոնք ժողովրդական վերահսկիչների նկատմամբ, մեղմ ասած, անբարյացակամ են, իսկ նրանց հանձնարարականներն ընդունում են գրեթե որպես ոտնձգություն իրենց հեղինակության հասցեին։

Սա ներհակ է մեր կուսակցական դիրքավորմանը։ ՍՄԿԿ-ն ձգտել է և կձգտի հասնելու, որ ժողովրդական վերահսկողության մարմիններն ավելի համարձակորեն, վճռականորեն հանդես գան այն ամենի դեմ, ինչը հակասում է մեր հասարակության շահերին, այն բոլոր փորձերի դեմ, որոնց նպատակն է գործել ի վնաս այդ շահերի, շրջանցել օրենքը։ Այսպիսի փորձերի դեմ մղվող պայքարում անկախ նրանից, թե դրանք որտեղ են ի հայտ եկել, ումից են բխում, ժողովրդական վերահսկիչներին ամենաաչքի ընկնող դերն է պատկանում։ Թույլ տվեք վստահություն հայտնել, որ նրանք այդ դերը մշտապես կկատարեն արժանավայել կերպով։

Վերահսկչական ծառայությունն առանձնահատուկ բնույթ ունի և մարդկանցից պահանջում է առանձնահատուկ կոփվածք։ Նրանք աչքի են ընկնում տիրոջ աչալուրջ հայացքով, գործին խորամուխ լինելու, ամեն ինչ անաչառ, քննախույզ կերպով պարզելու ունակությամբ։ Նրանց խորթ են կանխակալությունը, մեծամտությունը, սնապարծությունը։

Եվ ահա, ընկերնե՛ր, մարդ երբեմն մտածում է՝ իսկ չէ որ ժողովրդական վերահսկիչը նաև ընկնում է դժվարին վիճակի մեջ։ Ասենք թե ստուգում է կատարվել և այդ ստուգումը նյութեր է տվել ադմինիստրացիայի հասցեին լուրջ մեղադրանքի համար։ Հարկ է լինում հանդես գալ հենց սեփական ղեկավարների անաչառ քննադատությամբ։ Ինչ ուզում եք ասեք՝ դա պահանջում է արիություն, հոգու ամրություն, տոկունություն։ Առանց այդ հատկանիշների անկարելի է յոլա գնալ նաև այն դեպքում, երբ որևէ մեկը հանկարծ դաղում է անտարբերության այսպիսի կոպիտ հարցիկով՝ ինչ է, քեզ ուրիշներից շա՞տ է պետք։

Ժողովրդական վերահսկիչը միշտ, ամենուրեք, ամեն մի պարագայում մարտիկ է, և թող նա լինի աննկուն մարտիկ։ (Ծափահարություններ)։

Ուզում եմ ձեզ հավաստիացնել, թանկագին ընկերներ, որ կուսակցությունը բարձր է գնահատում ձեր մեծ, պատվավոր և շատ հարկավոր աշխատանքը, անվարան ապավինում է ժողովրդական վերահսկողության ուժին, նրա օգնությանը այն պատասխանատու խնդիրների լուծման գործում, որ մեր առջև կանգնած են այսօր և կանգնելու են վաղը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՀԱՂԹԱԿԱՆ ԵՐԹԸ

ՎԱԹՍՈՒՆՅՈԹ ՏԱՐԻ ԱՌԱՋ Ռուսաստանի աշխատավոր զանգվածները Վ. Ի. Լենինի գլխավորած բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ գրոհեցին ցարական կայսրության միջնաբերդը և ազդարարեցին նոր աշխարհի ծնունդը։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը՝ 20-րդ դարի գլխավոր իրադարձությունը, որը Ռուսաստանում կործանեց բուրժուակալվածատիրական կարգերը, հողագնդի մեկ վեցերորդում վերջ տվեց սոցիալական ու ազգային կեղեքմանը։

Ձմեռային պալատի գրոհից սկսած, անցնելով պատերազմական ահեղ փորձությունների և խաղաղ շինարարության տարիների հերոսական մեծագործությունների բովով, սովետական ժողովուրդը հիմնովին փոխեց հասարակության զարգացման հունը ողջ աշխարհում։

Այդ ջանքերի հիմնական արդյունքը մեր երկրում հասուն սոցիալիզմի կառուցումն է, որի պլանաչափ և համակողմանի զարգացումը մեծ Հոկտեմբերի անմահ գործի օրգանական շարունակությունն է, արդի պայմաններում մեր կուսակցության ու ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությունը։

Սոցիալիզմը, դուրս գալով մեկ երկրի շրջանակներից, հաղթականորեն քայլում է մոլորակի բոլոր մայր ցամաքներով, հասարակության զարգացման նախաձեռնությունը վճռականապես ու վերջնականորեն վերցնելով իր ձեռքը։ Սոցիալիզմը, օգտագործելով արտադրության իրեն ներհատուկ եղանակի առավելությունները և հենվելով սոցիալիստական երկրների միջազգային փոխօգնության վրա, վերջին տարիներին զգալիորեն մեծացրել է իր տնտեսական և գիտատեխնիկական կարողությունը։ Սոցիալիստական երկրները տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան 40 տոկոսը, ընդ որում համաշխարհային արդյունաբերական արտադրանքում միայն Սովետական Միության բաժինը կազմում է 20 տոկոս։ ՍՍՀՄ-ում ներկայումս երկու օրվա ընթացքում ավելի շատ արդյունաբերական արտադրանք է թողարկվում, քան նախահեղափոխական Ռուսաստանում ամբողջ 1913 թվականին։ Ազգային եկամտի աճի միայն մեկ տոկոսն այժմ կազմում է մոտ 5 միլիարդ ռուբլի։

ՍՍՀՄ կենտվիճվարչության հաղորդագրության համաձայն, մեր երկրի արդյունաբերության 1984 թ. ինն ամսվա արտադրանքը, նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 4,1 տոկոսով։ Գերազանցվել են կարևորագույն շատ արտադրատեսակների թողարկման առաջադրանքները։ Աշխատանքի արտադրողականությունն աճել է 3,7 տոկոսով, որի հաշվին ստացվել է արտադրության աճի 94 տոկոսը։ Յուրացվել և սկսվել է ավելի քան 2 հազար նոր արտադրատեսակների թողարկումը, բարելավվել են արտադրանքի արտադրության և որակի տեխնիկատնտեսական ցուցանիշները։

Ավելի քան երեք հազար կիլոմետրանոց Բայկալ—Ամուրյան մայրուղու կառույցի ավարտով Տայշետ—Լենա գիծը միացավ Ամուրի Կոմսոմոլսկի և Խաղաղ օվկիանոսի հետ։ Ուրենգոյ—Կենտրոն II 3.032 կիլոմետրանոց գազամուղի 1.620 կիլոմետրն արդեն կառուցվել է։ Ընթացիկ հնգամյակում գործարկվել են արդեն զգալի թվով ջերմային և ատոմային էլեկտրակայաններ, այդ թվում՝ 1.200 մեգավատ հզորության էներգաբլոկը Կոստրոմայի ջերմաէլեկտրակայանում և 1.500 մեգավատ հզորության էներգաբլոկը Իգնալինսկի

ԱէԿ-ում։ Երկրում գործող աշխարհի ամենախոշոր միասնական էլեկտրաէներգետիկ համակարգի հզորությունն ընթացիկ տարում մեծացավ 25,8 մլն կվտ-ով և հասավ 261,6 մլն կվտ-ի։ Անցած տարի արտադրվել է 1 տրիլիոն 306 մլրդ կվտ/ժամ էլեկտրաէներգիա։

Նման հաջողություններ են ձեռք բերվել նաև ծանր ու թեթև արդյունաբերության ճյուղերում, սննդարդյունաբերության, մեքենաշինության, արդյունաբերական ու բնակարանային շինարարության, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման և բազմաթիվ այլ բնագավառներում։

Միայն նոր հասարակարգի աշխատավորներին է հատուկ տիրոջ զգացմունքը, ավելի բարձր արտադրողականության հասնելու գիտակցական ձգտումը, որի կարևոր լծակներից է սոցիալիստական մրցությունը։ Այդ համամիութենական շարժման մեջ ընդգրկված է 112,6 մլն մարդ։ 1984 թ. ապրիլի 21-ին Վ. Ի. Լենինի ծննդյան 114-ամյակին նվիրված կոմունիստական շաբաթօրյակին մասնակցեց ավելի քան 157 մլն մարդ։ Նրանք վաստակեցին մոտ 186 մլն ռուբլի, որը փոխանցվեց հնգամյակի ֆոնդին, թողարկեցին 985 մլն ռուբլուց ավելի արդյունաբերական արտադրանք։ Այս ամենին սովետական մարդիկ հասել են գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները էկոնոմիկայի բոլոր ճյուղերում արագ և արդյունավետ ներդնելու շնորհիվ։ Բավական է ասել, որ ՍՍՀՄ-ում գիտատեխնիկական ընկերությունների և ինժեներների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության կազմում գործում են աշխատավորների 1.009 հազարից ավելի հասարակական ստեղծագործական միություններ, որոնց մասնակիցների թիվը հասնում է 6.836 հազարի։

Մեծ Հոկտեմբերը հաստատեց աշխատանքի թագավորությունը, որն աննախադեպ խթանեց մարդու ստեղծարար կարողությունները, հիմնեց մի նոր աշխարհ, որի նշանաբանն է աշխատանքն ու խաղաղությունը։ Սոցիալիստական առաջընթացի ուղին թևակոխած ժողովուրդները խորին ակնածանք են տածում ՍՍՀՄ-ի՝ Հոկտեմբերի հայրենիքի, աշխատավորների առաջին պետության նկատմամբ, որը հեղափոխական լավատեսությամբ տոգորեց նրանց, լուսավորեց նոր կյանքի կառուցման նրանց ուղին։

Որքան ամրապնդվում ու զարգանում է Հոկտեմբերի ծնունդ նոր սոցիալիստական քաղաքակրթությունը, որքան հարուստ ու բովանդակալից է այն դառնում, այնքան լիովին են բացահայտվում կոմունիստական աշխարհայացքի հիմնադիրների գաղափարների հանճարեղությունը։ Հոկտեմբերով է սկըսվում մարդկության իսկական պատմությունը, որը զարգանում է Մարքսի, Էնգելսի, Լենինի կանխանշած ուղիով։ Աշխարհում առաջին պրոլետարական հեղափոխության հաղթանակից հետո մեր մոլորակի դեմքն անճանաչելիորեն փոխվել է։ Ստեղծվել և անկասելի թափով զարգանում է սոցիալիստական երկրների ընկերակցությունը, որն աչքի ընկնող նվաճումների է հասել տնտեսության և կուլտուրայի ասպարեզներում, ազգերի իրավահավասարության և բարեկամության ամրապնդման, անհատի համակողմանի ծաղկման համար բարենպաստ պայմաններ ստեղծելու, երկրի կառավարման գործում ժողովրդական լայն զանգվածների մասնակցությունն ապահովելու, դեմոկրատիայի անշեղ զարգացման բնագավառներում։

Համաշխարհային սոցիալիզմն այսօր իր տնտեսական ու պաշտպանական հզորությամբ դիմակայում է միջազգային իմպերիալիզմին և դարձել է մեր մոլորակի խաղաղության հուսալի պատվարը։ Լինելով հասարակական պրոգրեսի վճռական գործոնը, սոցիալիստական պետությունների ընկերակցությունն իրենից ներկայացնում է միջազգային հարաբերությունների նոր տեսակ։ Այդ հարաբերությունները խարսխվում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների՝ գաղափարական միասնության, նպատակների ընդհանրության, ընկերական փոխօգնության վրա՝ լիովին հարգելով երկրներից յուրաքանչյուրի շահերը, առանձնահատկությունները և ավանդույթները։

Զարգացած սոցիալիզմի ստեղծումն ու ձեռքբերումները վավերագրեց ՍՍՀՄ սահմանադրությունը՝ աշխարհում առաջին սոցիալիստական համաժողովրդական պետության հիմնական օրենքը։ Սովետական հասարակարգն



ազատ է ամեն կարգի շահագործումից, ազգային ճնշումից, ճգնաժամի ու գործազրկության սպառնալիքից։ Սոցիալիստական պետությունը սահմանադրորեն երաշխավորում է մարդու հիմնական իրավունքները, այդ թվում աշխատանքի և հանգստի, առողջության պահպանման, ծերության, հիվանդության և անաշխատունակության դեպքում նյութական ապահովության, բնակարանի, կրթության, կուլտուրայի նվաճումներից օգտվելու իրավունքը։ Հիրավի դեմոկրատական քաղաքական կարգը ՍՍՀՄ բոլոր քաղաքացիներին երաշխավորում է մասնակցությունը պետական ու հասարակական գործերին։ Դրանով իսկ իրականանում է «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» կոմունիստական սկզբունքը։

Կուսակցության սոցիալական քաղաքականության գլխավոր ուղղությունը որոշող «Ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար» լոզունգը լիովին արտահայտում է կուսակցության մշակած և հետևողականորեն կենսագործվող գիտականորեն հիմնավորված տնտեսական ստրատեգիան, որի գերագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքն է։ Մեր հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, սովետական մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների լիովին բավարարման միակ ճիշտ ուղին արտադրության դինամիկ և համամասնական զարգացումն է, նրա արդյունավետության բարձրացումը, աշխատանքի որակի համակողմանի բարելավումը և աշխատանքի արտադրողականության արագ աճը։

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը երկրի էկոնոմիկայի հզորության հետագա մեծացումն է, արտադրական ֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, դրա հիմքը կազմող ծանր արդյունաբերության հաշվեկշռված հաստատուն աճի ապահովումը, գիտատեխնիկական հեղափոխության բոլոր նվաճումների ամենաարագ ներդրումը։

Տնտեսական ու սոցիալական կարևորագույն նպատակներին է ծառայում կուսակցության ագրարային քաղաքականությունը, որով նախատեսվում է գյուղատնտեսական արտադրությունը դարձնել էկոնոմիկայի բարձր զարգացած հատված։ Հնգամյակից հնգամյակ այս ճյուղին հատկացվող կապիտալ ներդրումներն ավելանում են տասնյակ միլիարդավոր ռուբլիներով։ ՍՄԿԿ-ի գործունեության բարձրագույն նպատակի՝ սովետական մարդկանց կենսամակարդակի անշեղ բարձրացման ապահովման համար կուսակցության Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումում հաստատած երկրի պարենային ծրագիրն արգասաբեր գործադրելու հետևանքով 1983—1984 թվականներին գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր արժեքն ավելացավ մոտ 20 մլրդ ռուբլով։

Հատկապես զգալի են անասնապահության բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Կաթի միջին տարեկան արտադրությունն աճել է 7,4 մլն, մսինը՝ 1,4 մլն տոննայով, ձվինը՝ 4,6 մլրդ հատով։ Դրա շնորհիվ մեծացել է որոշ արժեքավոր մթերքների սպառման մակարդակը, որը նաև ազդել է սովետական մարդկանց սննդի կառուցվածքի բարելավման վրա։

Գյուղատնտեսական մթերքների արտադրանքի հետագա աճի, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի հաջող աշխատանքի ապահովման, վերջին հաշվով, սովետական մարդկանց կենսամակարդակի առավել բարձրացման նկատմամբ հոգատարության մի վառ արտահայտություն է ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հոկտեմբերյան պլենումը, որը քննարկեց «Երկրի պարենային ֆոնդի կայուն մեծացման նպատակով մելիորացիայի, մելիորացված հողերի օգտագործման արդյունավետության բարձրացման երկարաժամկետ ծրագրի մասին» հարցը։ Պլենումի ընդունած որոշման մեջ, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառում պարունակվող հիմնադրույթները գյուղատնտեսության շեշտակի վերելքի տեսական, մինչև 2000 թվականի հեռանկարով նախատեսված ծրագիր են։

«Իր ագրարային քաղաքականության մեջ,— նշեց պլենումը,— կոմունիստական կուսակցությունը բացառիկ մեծ նշանակություն է տալիս գյուղատնտեսական արտադրության կայունության բարձրացմանը՝ որպես ամբողջ ժո-

ղովրդական տնտեսության պլանաչափ զարգացման կարևորագույն պայմանի։
Այդ նպատակին հասնելու գործում վճռական դեր է պատկանում մելիորացմանը՝ հողագործության ինտենսիվացման և նրա բերքատվության բարձրացման հզոր միջոցին։ Գյուղատնտեսության մեքենայացման ու քիմիացման զուգակցությամբ մելիորացումն ապահովում է հողերի արգավանդության բարձրացում, գյուղատնտեսական հողահանդակների, նյութատեխնիկական և աշխատանքային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործում»։

Պլենումը պահանջեց գործի դնել գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացման բոլոր ռեզերվները, հասնել բոլոր ոռոգվող և ցամաքեցված հողերի բարձրարդյունավետ օգտագործմանը՝ սահմանված ժամկետներում յուրաքանչյուր տնտեսության կողմից նախագծային բերքատվության ձեռքբերումով։ Նախատեսվում է ոռոգովի հողագործության զարգացման արագացումը Հյուսիսային Կովկասում, Պովոլժիեում, Ուկրաինայում և Մոլդավիայում՝ գյուղատնտեսական մթերքների երաշխավորված արտադրության խոշոր գոտիներ ստեղծելու նպատակով։ Ոռոգման շինարարությունը պետք է շարունակել Միջին Ասիայի հանրապետություններում, Ղազախստանում և Անդրկովկասում, մելիորատիվ աշխատանքների կոմպլեքսն իրականացնել ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտում, Սիբիրում և Հեռավոր Արևելքում, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Պոլեսիեում, Մերձբալթիկայում։ Նախատեսվում է մինչև 2000 թվականը ոռոգելի հողատարածությունը հասցնել 30—32 մլն հեկտարի, իսկ ցամաքեցված հողերինը՝ 19—21 մլն հեկտարի, այդ հողերում հացահատիկի արտադրությունը հասցնելով 55—60 միլիոն տոննայի, այդ թվում եգիպտացորենինը՝ 18—20 մլն տոննայի, անասնակերինը՝ 115—125 մլն տոննա կերամիավորի։ Հողերի մելիորացման և դրանց գյուղատնտեսական յուրացման նպատակով 1986—1990 թվականների համար կապիտալ ներդրումների լիմիտ է սահմանված 50,4 մլրդ ռուբլու չափով։ Այդ ամենի իրականացումը տեղի կունենա արդյունաբերական հիմքի վրա, օգտագործելով արդի ավտոմատացված, ըստ էության ինժեներական համակարգեր, նորացված հողերում առաջին հերթին կիրառելով հողագործության գիտականորեն հիմնավորված եղանակները, առաջավոր տեխնոլոգիաները։

Զգալիորեն կաճեն ոռոգելի հողատարածությունները նաև մեր հանրապետությունում։ Դրանք կհասցվեն 0,4—0,47 մլն հեկտարի։ Կշարունակվեն հողերի մելիորացումը զարգացնելու աշխատանքները Արարատյան դաշտում և Ախուրյան գետի ավազանում։ Նախատեսվում է գյուղատնտեսական աշխատանքներ կատարել Հրազդան գետի ավազանում ոռոգովի հողերի ջրապահովվածությունը բարձրացնելու նպատակով, ավարտել Կապսի և Եղվարդի ջրամբարների շինարարությունը, ոռոգովի հողերում ավելացնել խաղողի և մրգերի արտադրությունը, ստեղծել կերի արտադրության կայուն բազա։

«Այն պրոբլեմները, որ կյանքն առաջադրում է գյուղատնտեսությունը էկոնոմիկայի բարձր զարգացած հատվածի վերածելու ճանապարհին,— ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— պահանջում են նոր, առավել արդյունավետ լուծումներ։ Եվ խոսքը վերաբերում է ոչ թե մեր դիրեկտիվներում ծանրության կենտրոնների տեղափոխմանը, այլ իրոք նորարարական և ստեղծագործական մոտեցումներ գտնելուն։ Ելնելով դրանից, Կենտրոնական կոմիտեն այսօր առաջադրում է հողերի մելիորացումը լայն մասշտաբով ծավալելու հարցը՝ այն դիտելով որպես գյուղատնտեսության հետագա վերելքի, երկրի պարենային ֆոնդի կայուն ավելացման վճռական գործոն»։

Հիրավի, դինամիկ զարգացող սոցիալիստական հասարակությունն իր վերընթացին առաջադրում և լուծում է նորանոր խնդիրներ, որով ավելի բարեկեցիկ ու երջանիկ է դարձնում աշխատանքի մարդկանց, մեծացնում սոցիալիզմի հեղինակությունն ու առինքնող ուժն ամբողջ աշխարհում։ Այդ տիտանական աշխատանքը գլխավորում է լենինյան կուսակցությունը՝ սովետական հասարակության ղեկավար և ուղղության տվող ուժը։

Մոտենում է ՍՄԿԿ XXVII համագումարը, որը կընդունի ՍՄԿԿ-ի ծրագրի



նոր խմբագրույթ։ Այնտեղ կարտացոլվի ու կամփոփվի այն ամեն էականորեն
նորը, ինչ հասարակական պրակտիկայում ու տեսության մեջ երևան է եկել
վերջին քառորդ դարի ընթացքում։ Խոսելով կոմունիստական հեռանկարի մա-
սին, ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում ընկեր
Կ. Ու. Չեռնենկոն նշեց, որ «մենք ամեն ինչ անում ենք այդ հեռանկարը մո-
տեցնելու համար։ Իսկ դա մոտեցնել կարելի է միայն մի միջոցով— լուծելով
կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի այս կամ այն աստիճանին վե-
րաբերող մեծ ու բարդ պրոբլեմների ամբողջ կոմպլեքսը։ Դա լիովին համա-
պատասխանում է լենինյան պատկերացմանն այն մասին, որ «Կոմունիզմը
սոցիալիզմի զարգացման բարձրագույն աստիճանն է» ...Զարգացած սոցիա-
լիզմի փուլի տևականությունը բնավ չի նշանակում, թե մենք կարող ենք չհո-
գալ տեմպերի մշտական արագացման մասին, հետաձգել ինչ-որ հասունացած
գործեր։ Այսօր մենք մեր զարգացման առավելագույն արագացմանն ենք նպա-
տակամղում ժողովրդի բոլոր ստեղծագործական ուժերը, նրա աշխատանքային
ձեռներեցությունը»։

Մեր պլանները արարման պլաններ են։ Դրանց իրականացման համար
անհրաժեշտ են խաղաղություն, միջազգային հարաբերությունների նորմալ զար-
գացում, զինաթափում, մարդկային ստեղծագործական կարողությունը մարդ-
կանց բարօրությանը և ոչ թե նրանց ոչնչացմանը ծառայեցնելու, տարբեր սո-
ցիալ-քաղաքական կարգի պատկանող երկրների միջև լենինյան խաղաղ գո-
յակցության սկզբունքով փոխշահավետ համագործակցության հաստատում։
Սոցիալիզմի իդեալը զինաթափումն է, սոցիալիզմն ու խաղաղությունն ան-
քակտելի են։ Եվ լենինյան կուսակցության, սովետական պետության իմաս-
տուն արտաքին քաղաքականության շնորհիվ է, որ գերմանական ֆաշիզմի
ջախջախումից հետո արդեն 40 տարի է, ինչ մարդկությունն ապրում է խա-
ղաղության պայմաններում։

Մեծ Հոկտեմբերը վերջ տվեց ոչ միայն մարդու կողմից մարդու շահա-
գործմանը, այլև փոքր ազգերի ճնշմանը տիրապետող ազգի կողմից։ ՍՄԿԿ-ն
պատմության մեջ առաջին անգամ հռչակեց և իրականացրեց ազգերի և ազ-
գությունների իրավահավասարությունը, պրոլետարական և սոցիալիստական
ինտերնացիոնալիզմի սկզբունքից բխող փոխօգնությունն ու դրա վրա խա-
րսխված նրանց եղբայրական միասնությունը։

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվեցին սովետական
կարգեր։ Սովետական Միության ժողովուրդների մեծ ընտանիքում աննախըն-
թաց թռիչք ապրեց հայ ժողովուրդը։ Մեծ Հոկտեմբերը նրան փրկեց ֆիզիկա-
կան բնաջնջումից, ազատագրեց սոցիալական կեղեքումից և ազգային վերա-
ծննդի լայն հնարավորություններ ընձեռեց։ Ավերի ու ավարի, ողբի ու որբի,
գաղթականների երկիր Հայաստանը, Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստա-
կան կուսակցության ինտերնացիոնալիստական քաղաքականության շնորհիվ,
ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնությամբ, սովետական մյուս ժողո-
վուրդների աջակցությամբ կարճ ժամանակում հասավ աննախադեպ հաջողու-
թյունների, դարձավ զարգացած արդյունաբերության ու գյուղատնտեսության,
առաջավոր գիտության ու տեխնիկայի, բարձր կուլտուրայի հանրապետություն։

Հայ ժողովրդին սոցիալիզմի ընձեռած սոցիալական բարօրության պերճա-
խոս վկայությունն է այն փաստը, որ անցած 64 տարիների ընթացքում հան-
րապետության ազգաբնակչությունն աճել է ավելի քան չորս անգամ։ Հանրա-
պետությունում մեկ օրում 1,3 անգամ շատ արդյունաբերական արտադրանք է
թողարկվում, քան ամբողջ 1922 թվականին, իսկ էլեկտրաէներգիա՝ 8 անգամ
շատ, քան 1913 թվականին։

Հազարամյակների պատմություն ունեցող ժողովուրդը, հաղթահարելով
դարավոր խավարն ու հետամնացությունը, առաջին անգամ լայն մասշտաբով
հաղորդակցվեց ոչ միայն համաշխարհային քաղաքակրթության նվաճումնե-
րին, այլև պետական հոգացողությամբ ոչնչացումից փրկված, մոռացության
փոշու տակից հանված սեփական կուլտուրայի գանձերին։ Հայ ժողովուրդը
տոգորվեց ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական մեծ հայրենիքի նկատմամբ

սիրո ու նվիրվածության զգացումով, այն օրինական հպարտության գիտակցությամբ, որ իրեն բախտ է վիճակվել ընթանալու մարդկության իսկական պատմությունը կերտող ժողովուրդների հետ ուս-ուսի տված։

Վստահ քայլերով է ընթանում մեր հանրապետությունը տնտեսական ու կուլտուրական նոր վերելքի ուղիով։ Հայ ժողովրդի ստեղծարար տաղանդը բացառիկ ուժով դրսևորվեց վերջին տասնամյակում։ Համամիութենական սոցիալիստական մրցությունում ակնառու հաջողությունների համար Սովետական Հայաստանը ութ տարի անընդմեջ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Այս տարիներին կառուցվեցին բազմաթիվ գործարաններ, նոր արտադրամասեր ու տեղամասեր, վերակառուցվեցին հները, իրենց դռները բացեցին նոր դպրոցներ, մանկապարտեզներ, մանկամսուրներ, պոլիկլինիկաներ, հիվանդանոցներ, գիտության ու կուլտուրայի բազմաթիվ նոր օջախներ։ Հիրավի եղբայրական բարեկամության կառույցներ դարձան Արփա—Սևան 48 կիլոմետրանոց ստորգետնյա ջրատարը, որը հանրապետության ժողովրդական տնտեսության համար անգնահատելի նշանակություն ունի, Երևանի մետրոպոլիտենն իր պալատանման շքեղ կայարաններով, «Զվարթնոց», «Էրեբունի» և Լենինականի օդանավակայանների շենքերը, Ծիծեռնակաբերդի հոյակապ մարզահամերգային համալիրը և շատ ուրիշ կառույցներ, որոնք համընդհանուր հիացմունք են առաջացնում։

Գեղեցկացել, բարետես են դարձել մեր քաղաքներն ու գյուղերը, մեր նիստ ու կացը, մեր կենցաղը։ Արմատավորվում են նոր ծեսեր, ավանդույթներ, դրա վառ վկայությունը Էրեբունի—Երևան հիրավի համաժողովրդական տոնախմբությունն է։

Ուրախացնում են այս տարվա ինն ամիսների ընթացքում հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաջողությունները։ Հայկական ՍՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանի կատարման համար ծավալված սոցիալիստական մրցության շնորհիվ արդյունաբերական արտադրանքի ծավալի պլանը կատարվել է 103,1, արտադրանքի իրացման պլանը 102,3 տոկոսով։ Պլանից դուրս թողարկվել է 154,2 մլն ռուբլու և իրացվել 116,2 մլն ռուբլու արտադրանք, որի աճը անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ կազմել է 5,9 տոկոս։

Աշխատանքի արտադրողականությունն աճել է 3,5 տոկոսով, որի հաշվին է ստացվել արտադրության աճի 59,3 տոկոսը։ Ժողովրդական տնտեսության մեջ նոր տեխնիկայի գծով ներդրվել է 691 կարևորագույն միջոցառում, որի շնորհիվ միայն արդյունաբերության մեջ տարեկան տնտեսական արդյունքը կկազմի ավելի քան 50,5 մլն ռուբլի։ Շահագործման են հանձնվել 448,9 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, հանրակրթական դպրոցների 13.476 աշակերտական տեղ, 4.955 տեղ մանկական նախադպրոցական հիմնարկություններում, 190 հիվանդանոցային մահճակալ։ Զգալիորեն ընդարձակվել է բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման ցանցը։

Հանրապետության բոլոր նվաճումները ձեռք են բերվել ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմկուսի, նրա Կենտկոմի ղեկավարությամբ, հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության անձնվեր աշխատանքի շնորհիվ։

Լենինականը առաջնորդի անունով կոչելու 60-ամյակին և քաղաքին Ժողովուրդների բարեկամության շքանշանի հանձնմանը նվիրված հանդիսավոր նիստում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը իրավացիորեն շեշտեց. «...Մենք երախտագիտությամբ ենք նշում այն անշահախնդիր օգնությունն ու աջակցությունը, որ Լենինականին, Սովետական Հայաստանին մշտապես ցույց են տվել և ցույց են տալիս ՍՍՀՄ-ի եղբայրական ժողովուրդները և, առաջին հերթին, ռուս մեծ ժողովուրդը։ Քաղաքի, հանրապետության յուրաքանչյուր աշխատավոր գիտակցում է, որ մեր բոլոր նվաճումներն իր և սովետական մարդկանց ընդհանուր, համատեղ աշխատանքի արդյունքն են, կուսակցության իմաստուն լենինյան ազգային քաղաքականու-



թյան իրականացման, նրա մեծ կանխատեսումների, լենինյան հանճարեղ կուրսի կենսագործման արդյունքը»։

Հայ ժողովուրդը միշտ էլ զգացել է ՍՄԿԿ Կենտկոմի ջերմ հոգատարությունը։ Դրա վառ դրսևորումներից է «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պատմական որոշումը, որը մոբիլիզացնող հսկայական նշանակության մարտական ծրագիր է հանրապետության կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների համար՝ գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հետագա կատարելագործման ու բարելավման, կոմունիստական շինարարությունում նոր բնագծեր նվաճելու, կյանքի բոլոր բնագավառներում կարգապահության և կազմակերպվածության ամրապնդման, հետագա սոցիալ-տնտեսական առաջընթացի համար աշխատավորներին մոբիլիզացնելու նպատակով։

ՍՄԿԿ Կենտկոմը բարձր է գնահատում ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների ձեռքբերումները ժողովրդական տնտեսության պլանային առաջադրանքների կատարման ապահովման, գիտության ու կուլտուրայի զարգացման, գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի կազմակերպման բնագավառներում։

Հիրավի բարձրանում է գաղափարախոսական աշխատանքի գիտական մակարդակը, ամրապնդվում է կապը սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման հետ։ Աշխատավորների արտադրական և հասարակական ակտիվության վերելքի պայմաններում արտադրական կոլեկտիվներում արմատավորվել են սոցիալիստական ապրելակերպի նորմերը։ Հանրապետությունում առկա է բարոյա-քաղաքական առողջ մթնոլորտ։ Այս ոգևորիչ գնահատականը մեզ մղում է աշխատանքային նոր սխրանքների, տոգորում նորանոր բնագծեր նվաճելու վճռականությամբ։ Կուսակցական այս կարևոր փաստաթղթում հանգամանորեն շարադրված են մեր առաջիկա խնդիրները, վեր են հանված գործունեության տարբեր բնագավառներում տեղ գտած թերություններն ու բացթողումները։ ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դնում լիովին հաղթահարել գաղափարախոսական աշխատանքի խզումը իրական կյանքի պրոցեսներից։

Մասսայական ինֆորմացիայի միջոցների ուշադրության կենտրոնում պետք է մշտապես գտնվեն էկոնոմիկայի ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերքների հետագա ավելացման, հանրապետության գիտատեխնիկական և արտադրական պոտենցիալի առավել արդյունավետ օգտագործման հարցերը։

Անհրաժեշտ է հանրապետության աշխատավորությանը հետևողականորեն դաստիարակել մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության ոգով, ավելի վառ ու համոզիչ կերպով պրոպագանդել սովետական ապրելակերպը, համարձակորեն հանդես գալ անտնտեսվարության, անկարգապահության, տեղայնության դեմ, մեր ապրելակերպին խորթ ամեն մի երևույթի դեմ։

Կուսակցությունը պահանջում է գիտական հետազոտություններում, գեղարվեստական երկերում պատմական իրադարձություններն ու անհատներին գնահատելիս մշտապես ցուցաբերել դասակարգային մոտեցում։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը գործունեության կոնկրետ ծրագիր է, որի անշեղ իրականացումը պահանջում է բոլոր կուսակցական կազմակերպությունների ու աշխատավորական կոլեկտիվների ստեղծարար ուժերի ու ջանքերի առավելագույն լարում։

Սովետական Միության և ողջ սոցիալիստական ընկերակցության վարած լենինյան արտաքին քաղաքականությանը բնորոշ է հետևողական պայքարը հանուն խաղաղության։ Այդ քաղաքականության գլխավոր նպատակը, սոցիալիզմի կառուցման ու հետագա կատարելագործման համար խաղաղ արտաքին պայմանների ապահովումն է։ Խաղաղության պահպանումը, ջերմամիջուկային

պատերազմի սպառնալիքի վերացումը, սպառազինությունների մրցավազքի սանձահարումը, տիեզերքի ռազմականացման կանխումը, լարվածության թուլացման արդյունքների պահպանումը բաղադրամասերն են այն քաղաքականության, որը բխում է սոցիալիզմի էությունից և հիմնված է օբյեկտիվ գործոնների ու արդյունքների վրա: Ելնելով տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքից, սոցիալիստական երկրները, դաշնակցած խաղաղության պաշտպանության դիրքերում կանգնած առաջադիմական բոլոր ուժերի հետ, ձգտում են պաշտպանել խաղաղությունը, ամրապնդել միջազգային անվտանգությունը, զարգացնել պետությունների միջև փոխշահավետ համագործակցությունը:

Մինչդեռ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների ռեակցիոն շրջանները ձգտում են խախտել ուժերի պատմականորեն ստեղծված հավասարակշռությունը, հասնել ռազմական գերազանցության: Նրանց գործողությունները հանգեցնում են սպառազինությունների մրցավազքի ուժգնացմանը:

ԱՄՆ-ը, սոցիալիզմի նկատմամբ ռազմական գերազանցության ձգտելով, նպատակ ունի լիովին գործողությունների ազատություն ձեռք բերել զարգացող երկրների նկատմամբ: Միևնույն ժամանակ ԱՄՆ-ը հեղափոխական շարժումները ճնշելու, առաջադեմ վարչակարգերը քայքայելու նպատակով առավել ակտիվ և անսքող կերպով դիմում է բռնի ուժի: Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվության աճ, մյուս պետությունների սուվերենության անտեսում նկատվում է ամենուրեք՝ Եվրոպայում ու Կենտրոնական Ամերիկայում, Մերձավոր Արևելքում ու Պարսից ծոցի շրջանում, Աֆրիկայի հարավային մասում և այլ ռեգիոններում: Դրա ապացույցն էր նաև Գրենադայի դեմ ձեռնարկված ագրեսիան, որը ցույց տվեց, որ ամերիկյան իմպերիալիզմը միջազգային տեռորը դարձրել է պետական քաղաքականություն:

Սոցիալիզմի դեմ խաչակրաց արշավանքը ամերիկյան իմպերիալիզմը ծառայեցնում է նաև այն բանին, որպեսզի գաղափարախոսական պայքարը վերածի ամենակեղտոտ հոգեբանական պատերազմի: Ամերիկյան պրոպագանդիստական ապարատը և ՆԱՏՕ-ի գծով նրա համախոհները գաղափարախոսական պայքարում մասսայական հաղորդակցման միջոցներն օգտագործում են որպես խոյահարման միջոց իրենց գրպարտչական կամպանիաներում, որոնք ուղղված են առաջին հերթին ընդդեմ սոցիալիստական երկրների և պրոգրեսիվ դեմոկրատական շարժումների:

Հետևողականորեն ելնելով հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքից, ՍՍՀՄ-ը վերջին տարիներին արել է մի շարք կոնստրուկտիվ առաջարկություններ, որոնցում հաշվի են առնվում երկու կողմերի անվտանգության շահերը: Հակառակ դրան, ամերիկյան առաջարկությունները նպատակամղված են Սովետական Միության միակողմանի զինաթափմանը և ԱՄՆ-ի ռազմական գերազանցությանը հասնելուն:

Սովետական Միությունը, սպառազինությունների բնագավառում հավասարակշռությունը պահպանելու նպատակով համապատասխան միջոցներ կիրառելու հետ միասին, ցուցադրեց խելամտություն և խաղաղության անկեղծ ձգտում, հայտարարելով, որ եթե ԱՄՆ-ը և իր արևմտաեվրոպական դաշնակիցները պատրաստակամություն ցուցադրեն վերադառնալու մինչև հրթիռները տեղադրելը եղած վիճակին, ապա Սովետական Միությունը ևս պատրաստ է նման քայլ կատարելու:

Սովետական բոլոր մարդիկ, մեր հանրապետության աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս ու պաշտպանում լենինյան կուսակցության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությունը, որը նպատակամղված է զարգացած սոցիալիզմի կատարելագործմանը, սոցիալիստական քաղաքակրթության խորացմանը, մեծ Հոկտեմբերի ծնունդ սոցիալիզմի ընձեռած բոլոր հնարավորությունները մարդու բարօրությանը ծառայեցնելուն:

Պատմությունն օրինաչափորեն ընթանում է այն ուղիով, որ 67 տարի առաջ մատնանշել է մարդկային հասարակության նոր դարաշրջանը սկզբնավորած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը:

---

## Զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոբլեմներ

# ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՀՈՒՄԱՆԻԶՄԸ

**Ա. ԴԱՎԹՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

Կարլ Մարքսը կոմունիզմը համարել է իրական, գործնական հումանիզմ: Այն մարմնավորվել է ռեալ սոցիալիզմի պրակտիկայում, երբ լուծվեցին այնպիսի մարդասիրական խնդիրներ, ինչպիսին են աշխատավորների ազատագրումը կապիտալիստական շահագործումից, քաղաքական ճնշումից, ազգային ստրկացումից: Սոցիալիզմը վերացրեց ժողովրդական լայն զանգվածների կարիքն ու գործազրկությունը, մտավոր և ֆիզիկական աշխատանքի, քաղաքի և գյուղի միջև եղած դարավոր հակադրությունը, իրավազրկությունից ազատագրեց կանանց: Սոցիալիզմը ժողովրդական զանգվածներին ազատեց հոգևոր աղքատությունից՝ նրանց հաղորդակից դարձնելով կրթությանը, գիտության ու մշակույթի բարձունքներին: Սոցիալիզմի արտաքին քաղաքական կուրսը հասարակության կյանքից պատերազմները բացառելն է, տարբեր սոցիալ-քաղաքական կարգ ունեցող պետությունների միջև խաղաղ գոյակցություն հաստատելը:

Հումանիզմը մարմնավորվել է բուն սոցիալիստական հասարակության կառուցվածքում, որտեղ յուրաքանչյուրի զարգացումը բոլորի զարգացման պայմանն է: Միայն սոցիալիզմից է սկսվում, ինչպես կանխատեսել է Կ. Մարքսը, մարդկության իսկական պատմությունը, նրա շարժումը դեպի իսկական ազատության թագավորությունը:

Մասնավոր սեփականության վերացումը, արտադրության միջոցների սոցիալիստական հանրայնացումը պայմաններ ստեղծեցին յուրաքանչյուր մարդու ֆիզիկական ու հոգևոր կարողությունների դրսևորման համար: ՍՍՀՄ սահմանադրության մեջ օրենսդրորեն վավերագրված են սովետական քաղաքացիների սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական իրավունքներն ու ազատությունները: Դրանցից ամենակարևորներն են. աշխատանքի իրավունքը, հանգստի իրավունքը, առողջությունը պահպանելու իրավունքը, կրթության իրավունքը:

Այժմ, երբ սոցիալիզմը թևակոխել է իր հասունության փուլը, սովետական հասարակությունը լայն հնարավորություններ ունի ավելի խոր կերպով ու լիակատարությամբ ցուցադրելու իր մարդասիրական էությունը: Դա իր հերթին պայմանավորված է նրա քաղաքական սիստեմի կատարելությամբ և սոցիալական արդյունավետությամբ: Զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմը մի բարդ սոցիալական մեխանիզմ է, որի օգնությամբ աշխատավորները բանվոր դասակարգի և նրա կուսակցության ղեկավարությամբ իրականացնում են իրենց իշխանությունը: Կոմունիստական կուսակցության և սո-

Սոցիալիստական հումանիզմը դրսևորվում է նաև բնության ու հասարակության փոխհարաբերություններում։ Սոցիալիստական երկրներում, մասնավորապես ՍՍՀՄ-ում, բնության պահպանության պրոբլեմները բարձրացված են համապետական մակարդակի։ Ժողովրդական կոմիսարների խորհուրդը ղեկավարելու տարիներին Վ. Ի. Լենինը ստորագրել է 94 դեկրետ ու հրամանագիր, որոնք այս կամ այն չափով առնչվում էին բնության պահպանության հարցերին։

Բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերը մշակվել ու իրենց հետագա զարգացումն են ստացել ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության որոշումներում։ Այս առումով կարևոր ուղենիշեր են ՍՍՀՄ Գերագույն սովետի 1972 թ. սեպտեմբերի 20-ի «Բնության պահպանության բարելավման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին», ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1972 թ. սեպտեմբերի 29-ի «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին» որոշումները և բազմաթիվ այլ միջոցառումներ, որոնք արտացոլվել են պետական փաստաթղթերում։

ՍՍՀՄ սահմանադրության 18-րդ հոդվածում արձանագրված է. «Ելնելով ներկա և ապագա սերունդների շահերից, ՍՍՀՄ-ում անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի ու նրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական հարստությունների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար»։

Սկսած 1975 թվականից, ՍՍՀՄ-ում բնության և նրա ռեսուրսների պահպանությունը մտնում է երկրի ժողովրդական տնտեսության տարեկան և հեռանկարային պլաններում։ Միայն տասներորդ հնգամյակում այդ նպատակների համար իրացվել է 11 մլրդ ռուբլի։

Համաժողովրդական պետության մարդասիրական էությունը հատկապես վառ կերպով դրսևորվում է նրա արտաքին քաղաքական ֆունկցիայում։ Հենվելով միջազգային հասարակական զարգացման ու միտումների մարքսիստական-լենինյան խոր վերլուծության վրա, անշեղորեն կիրառելով լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը, զարգացնելով փոխըմբռնումն ու փոխվստահությունը ժողովուրդների միջև, սովետական պետությունը նպաստում է ամբողջ մոլորակի վրա քաղաքական մթնոլորտի մեղմացմանը։

Կյանքը համոզիչ վկայում է, որ սովետական արտաքին քաղաքականությունը խորապես հումանիստական է, դեմոկրատական, համապատասխանում է ՍՍՀՄ ժողովուրդների, եղբայրական սոցիալիստական երկրների, բովանդակ խաղաղասեր մարդկության շահերին։

Սովետական քաղաքական սիստեմը ոչ միայն գործնականում անց է կացնում ժողովուրդների միջև խաղաղության քաղաքականություն, այլև ձևակերպում, զարգացնում ու պրոպագանդում է խաղաղության փիլիսոփայությունը, որը հետզհետե ավելի ու ավելի է նվաճում մեր մոլորակի մարդկանց մտքերը։ Ոչ մի երկիր մարդկության առջև հանդես չի եկել այսպիսի լայն, կոնկրետ և ռեալիստական խաղաղության ծրագրով, ինչպիսին առաջադրել է Սովետական Միությունը։

Հումանիստական խոր զգացումով ու մարդկության ճակատագրի հանդեպ մեծ պատասխանատվությամբ են հագեցված կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության ձեռնարկումները, որոնք բխում են այն խոր համոզումից, որ չկա ավելի կարևոր բան, քան համընդհանուր խաղաղությունը։

Հասուն սոցիալիզմի պայմաններում մարքս-լենինյան հումանիզմի գիտական հիմքերը քաղաքական սիստեմի, նրա բոլոր օղակների գործունեության գործնական ծրագիրն են կազմում։ Եթե քաղաքական սիստեմի զարգացման հիմնական ուղղությունը դեմոկրատիայի համակողմանի ծավալումն է, ապա վերջինիս գլխավոր նպատակը անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումն է՝ մարքսիստական հումանիզմի իդեալը։

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ նվաճումը կուսակցության ղեկավարությամբ զարգացած սոցիալիզմի կառուցումն է, որի կատարելագործումը կարևոր ստրատեգիական խնդիր է։ Վերջինս անհնար է իրագործել առանց մասսաների ձեռներեցության ու ստեղծագործության լայն ծավալման, առանց հասարակական կյանքի հանգուցային պրոբլեմների լուծման գործում նրանց ամենաակտիվ ներգրավման։

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման գլխավոր ուղղությունը երկրի էկոնոմիկայի հզոր վերելքն է, նրա դինամիկ զարգացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, արտադրության ինտենսիվացումը, բնակչության կենսամակարդակի բարձրացումը, սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացումը, աշխատավորների հոգևոր և քաղաքական կուլտուրայի զարգացումը, աշխատանքային գիտակցական կարգապահության բարձրացումը, սոցիալիստական դեմոկրատիայի առավել ընդլայնումը, երկրի հասարակական, քաղաքական, տնտեսական կյանքին աշխատավորական մասսաների ակտիվորեն ներգրավումը, նախաձեռնությունների զարգացումը։ Այս ամենին հասնելու համար, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, պետք է «կարողանալ ժամանակին տեսնել և զորավիգ լինել ժողովրդական նախաձեռնությանը, ընդ որում ամենալայն առումով՝ աշխատատեղում կատարվող գործի նկատմամբ տիրոջ, ստեղծագործական վերաբերմունքից սկսած մինչև ակտիվ մասնակցությունը պետության, հասարակության կառավարմանը, սա է մեր առաջադիմության մեծագույն, կարելի է ասել՝ անսպառ ռեզերվը»։

Հասուն սոցիալիզմի պայմաններում իրականացվող խնդիրների լուծման գործում մեծ է բանվոր դասակարգի ստեղծագործական ակտիվության դերը։ Աշխատավորների, բանվոր դասակարգի աշխատանքային ակտիվությունը պայմանավորված է այն հասարակական-քաղաքական կարգով, սոցիալ-տնտեսական և սոցիալ-հոգեբանական այն հարաբերություններով, որոնցում ապրում, աշխատում և ստեղծագործում է անհատը։ Այստեղ բանվոր դասակարգի ստեղծարար կարողությունների դրսևորման համար առկա են բոլոր հնարավորությունները։ Սակայն, դրանից բնավ չի հետևում, թե սոցիալիստական հասարակարգը կամ նույնիսկ նրա զարգացած փուլն այդ ամենին հասնում է ինքնաբերաբար, մեխանիկորեն։ Բանվոր դասակարգի աշխատանքային, ստեղծագործական, հասարակական-քաղաքական ակտիվությունը ձեռք է բերվում մի ամբողջ շարք գործոնների շնորհիվ՝ աշխատանքի նկատմամբ անհատի ակտիվ դիրքորոշմամբ, նորի, առաջավորի արմատավորմամբ, նորովի մտածելու ունակությամբ, սոցիալիստական դեմոկրատիայի մշտական զարգացմամբ, գաղափարախոսական աշխատանքի կատարելագործմամբ, ան-

տարածելու լավը, առաջադիմականը և դրանով իսկ նպաստելու աշխատավորների, բանվոր դասակարգի աշխատանքային, ստեղծագործական ակտիվության աճին, սոցմրցության ծավալմանը։ «Աշխատավորական կոլեկտիվների և ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների կառավարման գործում նրանց դերի բարձրացման մասին» ՍՍՀՄ օրենքում հատկապես կարևոր տեղ է տրված աշխատավորական կոլեկտիվների աշխատանքային, ստեղծագործական ակտիվության բարձրացման հարցերին։ Օրենքը նախատեսում է, որպեսզի աշխատանքային կոլեկտիվները համակողմանիորեն բարձրացնեն կոլեկտիվի անդամների աշխատանքային ակտիվությունը, զարգացնեն սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, ընդունեն սոցպարտավորություններ և պայքարեն դրանց կատարման համար։

Այդ տեսակետից գնահատելով աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության բարձրացման գործում սոցմրցության դերը, անհրաժեշտ է նշել, որ ներկայումս երկրում մրցությանը մասնակցում է ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների ավելի քան 94 տոկոսը կամ ավելի քան 110 միլիոն մարդ։ Միլիոնավոր մարդիկ մասնակցում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված յուրաքանչյուր չորրորդ մարդը կոմունիստական աշխատանքի հարվածային է։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում են կրում 8 հազար ձեռնարկություններ և կազմակերպություններ։

Մեր հանրապետությունում սոցմրցության մեջ ընդգրկված են շուրջ մեկ միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ, ինժեներատեխնիկական աշխատողներ ու ծառայողներ, որոնց կեսից ավելին մասնակցում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Միաժամանակ հանրապետությունում գործում են 5.514 կոմունիստական աշխատանքի դպրոցներ՝ շուրջ 141 հազար անդամներով։

Անդրադառնալով սոցմրցությունում հաղթող ճանաչված առաջավոր կոլեկտիվների ձեռքբերումներին, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում նշեց, որ «Հայէլեկտրալույս», «Նաիրիտ», «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրաապարատ» միավորումներում, Զանգեզուրի պղնձամոլիբդենային, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատներում, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանում, «Երարդշին», «Քաջարանշին» տրեստներում և այլ կոլեկտիվներում հաջողությամբ, սերտ փոխկապակցվածությամբ են լուծվում արտադրական և դաստիարակչական խնդիրները, որոնց շնորհիվ էլ հասնում են լավագույն վերջնական արդյունքի։ Փոխկապակցված աշխատանքի լավ օրինակ է Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը, որը դարձել է համամիութենական սոցմրցության հաղթող։

Միաժամանակ նշվեցին այն կազմակերպությունները, որոնք սոցմրցության կազմակերպման գործում ընկնում են քանակի ետևից։ Հանրապետության գրեթե յուրաքանչյուր շրջանում, քաղաքում մրցության մեջ ընդգրկված են աշխատողների միջին հաշվով 95—97 տոկոսը։ «Սրանք լավ տվյալներ են,— ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը,— միայն թե պայմանով, որ նման ընդգրկումը, իրոք, ամրապնդվի մրցողների հետ տարվող համապատասխան մասշտաբային, խոր և, որ գլխավորն է, արդյունավետ աշխատանքով։ Մինչդեռ, իրականում շատ ձեռնարկությունների և առանձին շրջանների արտադրական գործունեության ցուցանիշները միշտ չէ, որ վկայում են այդ մասին։ Կան այնպիսիները, որոնք ոչ միայն չեն կատարում ստանձնած սոցպարտավորությունները, այլև պլանային առաջադրանքները»։

Այն ձեռնարկություններում, կոլեկտիվներում, որտեղ մրցության կազմակերպման համար ստեղծվում են, ինչպես Վ. Ի. Լենինն է ասել. «ձեռներեցություն, մրցություն, համարձակ նախաձեռնություն ցուցաբերելու լայն, իսկապես մասսայական հնարավորություն» (ԵԼԺ, հ. 35, էջ 229), այնտեղ արդյունքներն ավելի լավ են, մրցությունն իրոք նպաստում է անհատի, բանվո-



րի ստեղծագործական ակտիվության աճին, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, որը վերջին հաշվով ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի կառուցման գործում։ Մեծ է նաև արտադրական խորհրդակցությունների, աշխատավորական ժողովների, տնտեսական անալիզի բյուրոների, նորարարների խորհուրդների և այլնի դերը, որոնց միջոցով իրականացվում է աշխատավորներին ամբողջովին արտադրության, երկրի կառավարմանը ներգրավելու լենինյան պահանջը։ Ուշագրավ է այն իրողությունը, որ ամեն տարի արտադրական ժողովներում, խորհրդակցություններում և այլուր հանդես է գալիս մոտ 80 միլիոն մարդ։

Մեր հանրապետությունում այժմ գործում են 1,5 հազար արտադրական խորհրդակցություններ, որոնց կազմում ընդգրկված են ավելի քան 60 հազար բանվոր-ծառայողներ։ Դա մեծ ուժ է, որի խելացի, արդյունավետ օգտագործումը զգալի չափով կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը, կնպաստի գիտատեխնիկական առաջընթացին, արտադրության ռեզերվների հայտնաբերմանը և կոլեկտիվների սոցիալական զարգացմանը։ Ակներև են նաև հասարակական կոնստրուկտորական բյուրոների դերը (որոնց թիվը հասնում է 1,5 հազարի) և կոմպլեքս ստեղծագործական բրիգադների, արտադրամասերի ավելի քան 7 հազար նորարարների, ռացիոնալիզատորների ներդրումը գիտատեխնիկական ստեղծագործության, առաջընթացի գործում։ Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են 1918 գյուտ և 91,5 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց շնորհիվ տնտեսվել են 246,3 մլն ռուբլու աշխատանքային, նյութական և էներգետիկ ռեսուրսներ։ Գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկություններից ստացված տնտեսական օգուտը 1975 թ. կազմել է 35,6 մլն ռուբլի, 1980 թ.՝ 60,9, տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում՝ 1981 թ.՝ 68,1 մլն ռուբլի։

Բանվոր դասակարգի ստեղծագործական ակտիվությանը, կոլեկտիվիստական մտածողության ձևավորմանը նպաստում է նաև աշխատանքի կազմակերպման և վարձատրության բրիգադային եղանակը։ Հանրապետության արդյունաբերության համակարգում առկա են 16.052 բրիգադներ, որոնցում ընդգրկված է 210.126 բանվոր։ Իհարկե, աշխատանքի բրիգադային ձևի արմատավորման գործում կան նաև թերություններ։ Օրինակ, Երևան քաղաքի Օրջոնիկիձեի շրջանի 34 ձեռնարկություններից միայն 18-ում է այն կիրառվում։ Այստեղ բրիգադային աշխատանքում դեռևս ընդգրկված է բանվորների ընդհանուր թվի 36 տոկոսը, մինչդեռ հանրապետության արդյունաբերության ընագավառում այդ ցուցանիշը հասնում է 47 տոկոսի։

Միաժամանակ աշխատավորների, բանվոր դասակարգի ստեղծագործական ակտիվության և կուլտուր-տեխնիկական մակարդակի աճը նպաստում է բարձրորակ արտադրանքի ծավալի մեծացմանը։ Վերջինս հանրապետության արտադրանքի ընդհանուր ծավալում 1973 թ. կազմում էր 1,6 տոկոս, 1974 թ.՝ 4,3, այժմ՝ 20 տոկոս։ Հանրապետության բարձր գիտատեխնիկական պոտենցիալի մասին է վկայում այն փաստը, որ թեև ՀՍՍՀ-ն զբաղեցնում է երկրի տերիտորիայի 0,13 և բնակչության 1,2 տոկոսը, բայց մի ամբողջ շարք արտադրանքների տեսակներով թողարկում է համամիութենական ընդհանուր արտադրանքի 5-ից մինչև 35 տոկոսը։ ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ Հայաստանի կուսկազմակերպությունները կարողացել են աշխատավորական կոլեկտիվներին, կառավարման ու պլանավորման բոլոր օղակներին նպատակամղել բարձրացնելու արդյունաբերական արտադրանքի որակը։ Վերջինիս խթանման գլխավոր պայմանը գիտատեխնիկական առաջընթացն է, որը ենթադրում է բանվորի պատշաճ կրթական ու մասնագիտական մակարդակ։

Հայտնի է, որ տասը տարի առաջ բանվորների կեսից միայն փոքր-ինչ ավելին ուներ միջնակարգ և բարձրագույն (լրիվ և թերի) կրթություն, արդ՝ երեք քառորդը։ Այժմ զբաղված բնակչության յուրաքանչյուր հազար մարդուց 868-ը բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն ունի։

Այս իրողությունը նշանակալի է նաև տնտեսական առումով։ Նոր տիպի

պրոֆտեխուսումնարանի շրջանավարտը 5—6 տոկոսով ավելի արդյունավետ է աշխատում, քան հանրակրթական դպրոցների շրջանավարտները։ Նա անհամեմատ քիչ ժամանակ է կորցնում հերթական որակավորման կարգը ստանալու համար, իսկ արտադրական խոտան 8 անգամ ավելի պակաս է տալիս, քան անմիջական արտադրությունում պատրաստվածները։ Մեծ տեղ տալով պրոֆտեխսիստեմի միջոցով բանվորական կադրերի դաստիարակության գործին, ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումը խնդիր դրեց հասնել այն բանին, որ հանրապետության բանվոր դասակարգը հիմնականում համալրվի պրոֆտեխուսումնարանների սաների հաշվին։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1983 թ. օգոստոսին ընդունած «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու միջոցառումների մասին» որոշումը նոր խթան է ավելի արագացնելու գիտության վերաճումը անմիջական արտադրաուժի, վերացնելու մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, աշխատավորների կենսամակարդակը։ Կուսակցությունը բացառիկ նշանակություն է տալիս աշխատանքային պատշաճ կարգապահության հաստատմանը։ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի ընդունած «Աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման ուղղությամբ աշխատանքի ուժեղացման մասին» որոշման մեջ շեշտվում է, որ սոցիալիստական կարգապահությունը պետական պլանների կատարման, ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման, մեր ապրելակերպի հիմքերի ամրապնդման, մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվության խթանման, դեմոկրատիայի կատարելագործման և, որպես արդյունք, ժողովրդի բարեկեցության բարելավման պայմանն է։

Աշխատավորների, բանվոր դասակարգի ստեղծագործական ակտիվության գործը կազմակերպելիս անհրաժեշտ է հաշվի առնել այն հանգամանքը, որ ընթացիկ հնգամյակում երկրի մասշտաբով նախատեսվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ապահովել ազգային եկամտի աճի 90 տոկոսը, որը միևնույն ժամանակ կնշանակի տնտեսել մոտ 17 միլիոն մարդու աշխատանք։ Մեր հանրապետությունում աշխատանքի արտադրողականության հաշվին 1976—1980 թվականներին ստացվել է ազգային եկամտի աճի 56,3 տոկոսը, տնտեսվել է ավելի քան 170 հազար մարդու աշխատանք։

Հնգամյակի ընթացիկ տարվա ինն ամսում ձեռք է բերվել հանրային արտադրության և նրա արդյունավետության հետագա աճ։ Հանրապետության արդյունաբերության աշխատողները արտադրանքի իրացման ինն ամսվա պլանը կատարեցին 102,3 տոկոսով։ Տարվա սկզբից իրացվել է մոտ 116,2 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Ապրանքային արտադրանքի թողարկման 9 ամսվա պլանը կատարվել է 103,1 տոկոսով։

Բանվոր դասակարգի, աշխատավորական լայն մասսաների աշխատանքային, ստեղծագործական ակտիվության բարձրացումը կուսակցության ու ժողովրդի միասնության ամրապնդման հզոր լծակ է։ Ինչպես նշում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, կուսակցությունը միշտ էլ դիմել ու դիմում է մասսաների ստեղծագործության լայն ծավալմանը թե՛ մեր էկոնոմիկայի աճի զարգացման համար անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկելիս, թե՛ կուսակցության ուժերը գաղափարախոսական գործունեության վճռական բարելավմանը նպատակամղելիս։

Հանրապետության աշխատավորությունը, նրա բանվոր դասակարգը, Հայաստանի կոմկուսի գլխավորությամբ, աշխատանքային, ստեղծագործական ակտիվության պայմաններում կենսագործում են ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների պատմական որոշումները, անում են ամեն բան՝ էկոնոմիկան ինտենսիվ զարգացնելու, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու համար, դրանով իսկ իր ներդրումը կատարում երկրի ընդհանուր առաջընթացի գործում։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱՐԱՐ ՈՒԺԸ

Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ պատմական զարգացման բոլոր փուլերում սոցիալիստական մրցությունը եղել և մնում է որպես աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության, արտադրության արդյունավետության բարձրացման և կոլեկտիվիզմի ձևավորման հզոր լծակ։ Սակայն, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը նշեց, սոցիալիստական մրցության ձևերը ինչ-որ քարացած, մեկընդմիշտ տրված բաներ չեն, դրանք փոխվում են՝ նայած հասարակության նյութական ու հոգևոր հասունության մակարդակին։ Մեր երկրում սոցիալիստական մրցության սկիզբը դրվեց դեռևս քաղաքացիական պատերազմի տարիներին։ Այն ժամանակ կազմակերպվում էին կոմունիստական շաբաթօրյակներ, որոնք Վ. Ի. Լենինը անվանեց մեծ նախաձեռնություն։ Սակայն մասսայական սոցիալիստական մրցությունը ծավալվեց ավելի ուշ՝ 1929 թ., երբ «Պրավդայում» առաջին անգամ հրապարակվեց դեռևս 1917 թ. վերջերին Վ. Ի. Լենինի գրած «Ինչպես կազմակերպել մրցությունը» հոդվածը։

Սոցիալիստական մրցության առաջին գրավոր պայմանագիրն ստորագրվեց 1929 թ. մարտի 15-ին, Լենինգրադի «Կրասնի վիբորժեց» գործարանի՝ Միխայիլ Պուտինի ղեկավարած ալյումինի կաղապար մաքրողների բրիգադում։ Բանվորները կամավոր իջեցրին աշխատանքի վարձաչափերը և պարտավորվեցին բոլոր միջոցները ձեռնարկել աշխատանքի արտադրողականությունը 10 տոկոսով բարձրացնելու համար։ Այնուհետև մրցությունը դուրս եկավ ոչ միայն այդ գործարանի ու Լենինգրադի սահմաններից, այլև վերածվեց ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համամիութենական շարժման։

Լենինգրադցիների նախաձեռնությունը ջերմ արձագանք գտավ նաև Հայաստանում։ Երևան քաղաքում 1929 թ. ապրիլի բանվորական կոնֆերանսում սոցիալիստական մրցության պայմանագիր կնքվեց ձեթ-օճառի, մեխանիկական, կարբիդի և կաշվի գործարանների, ինչպես նաև ավտոմոբիլային հավաքակայանի և հիդրոէլեկտրակայանի կոլեկտիվների միջև։

Երեսնական թվականների սկզբին ծագեցին հասարակական «բուքսիրները»՝ որպես ետ մնացող կոլեկտիվներին առաջավորների ընկերական օգնության ձև։ Այդ նույն տարիներին լենինգրադցիները հանդես եկան հանդիպական արդֆինպլանների ընդունման նախաձեռնությամբ։ Այնուհետև ծավալվեցին տնտհաշվարկային բրիգադների, իզոտովյան, ստախանովական և այլ շարժումներ։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ծագեցին մրցության այնպիսի ձևեր, որոնք հնարավորություն էին ընձեռում քիչ աշխատողներով թողարկել շատ արտադրանք։ Բազմաթիվ բանվորներ պարտավորվում էին կատարել արտադրական երկու նորմա, որոնցից մեկը ռազմաճակատ մեկնած ընկերոջ կամ հարազատի փոխարեն։

Զարգացած սոցիալիզմի արդի ժամանակաշրջանում մեր երկրում երևան եկան սոցիալիստական մրցության այնպիսի նոր ձևեր, ինչպիսիք են աշխա-

ները մշակվում են կուսկոմիտեի անմիջական նախաձեռնությամբ և դրվում մրցության կազմակերպման հիմքում։ Դրանցով է որոշվում մրցանակային տեղեր տալու կարգը, հաղթող կոլեկտիվների համար սահմանվում են նյութական ու բարոյական խրախուսման զանազան միջոցներ։

Էլեկտրամեքենաշինարարների սոցմրցության մեջ ընդգրկված են ինչպես հիմնական և օժանդակ արտադրամասերը, այնպես էլ տեղամասերն ու բրիգադները։ Միջարտադրամասային մրցությունը, իր հերթին, կազմակերպվում է ըստ հիմնական և օժանդակ արտադրամասերի։ Դա մրցող կոլեկտիվների համար ստեղծում է մրցանակային տեղեր գրավելու պայքարի հավասար հնարավորություններ, բարձրացնում նրանց շահագրգռությունը արտադրության վերջնական արդյունքների նկատմամբ։

Ներկայումս միավորման գլխամասային ձեռնարկությունում՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում, մրցության մեջ ընդգրկված են գրեթե բոլոր աշխատողները։ Արտադրամասը մրցում է արտադրամասի հետ, տեղամասը՝ տեղամասի, բրիգադը՝ բրիգադի, անհատը՝ անհատի հետ։ 408 բրիգադ, 135 արտադրամաս, բաժին, տեղամաս և բյուրո մրցում են կոմունիստականի բարձր կոչման համար։ Անհատական պարտավորություններով աշխատող 7.500 մարդ ընդգրկված է կոմունիստական աշխատանքի հարվածայինի համար շարժման մեջ։ Եվ որքան մրցությունը լավ է կազմակերպվում, այնքան մեծանում են դրա ընդգրկման մասշտաբները, այնքան գործարար բնույթ է կրում այն և այնքան հաջողություններն ավելի ակնառու են դառնում։

Չի կարելի ասել, սակայն, թե միավորումում բոլորն են առաջավոր։ Կան նաև ետ մնացողներ։ Մի ժամանակ այդպիսիների թվում էր, օրինակ, յոթերորդ արտադրամասը։ Դա խիստ անհանգստացնում էր միավորման կուսկոմիտեին։ Մասնագետների օգնությամբ հանգամանորեն ուսումնասիրելով արտադրամասի գործերի վիճակը՝ կուսկոմիտեն քննարկեց հարցը և հաստատեց միջոցառումների լայն ծրագիր։ Դրա իրականացմամբ արտադրամասում վիճակը փոխվեց։ Նրա կոլեկտիվը մեկը մյուսի ետևից լուրջ նվաճումներ էր ձեռք բերում և այժմ մրցում է գլխամասային ձեռնարկության առաջավոր արտադրամասերից մեկի հետ։

Մրցության կազմակերպման ու արդյունավետության բարձրացման գործում զգալի հաջողությունների է հասել նաև Երևանի № 2 տրիկոտաժի «Անուշ» արտադրամիավորման կոլեկտիվը։ Այստեղ միմյանց հետ գործարար մրցության մեջ են բոլոր հերթափոխությունները, արտադրամասերն ու բրիգադները։ Բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների ճնշող մեծամասնությունն ընդգրկված է անհատական մրցության մեջ։ Տրիկոտաժագործները ձգտում են օգտագործել բոլոր հնարավորությունները և ռեզերվները, որպեսզի նվազագույն ծախսումներով ապահովվի մեծ քանակությամբ լավորակ արտադրատեսակների թողարկումը։ Մրցության արդյունքներն այստեղ ամփոփվում են ինչպես յուրաքանչյուր ամիսը մեկ, այնպես էլ եռամսյակի և տարվա վերջում։ Հաղթողներն արժանանում են նյութական և բարոյական խրախուսման։ Բացի այդ, ամփոփվում են նաև ըստ մասնագիտությունների աշխատանքի առաջավոր ձևերի կիրառման արդյունքները։ Արտադրամիավորման կուսակցական ու արհմիութենական կոմիտեների նախաձեռնությամբ վերջին ժամանակներս այստեղ շարժում է ծավալվել, որի նշանաբանն է՝ «Թողարկվող արտադրանքին նայել ոչ միայն արտադրողի, այլև գնորդի աչքերով»։ Այդ նշանաբանով աշխատողները ձգտում են, որպեսզի իրենց արտադրանքը լինի նորաձև, գեղեցիկ, որակյալ, համապատասխանի սեզոնին, դուր գա բոլոր գնորդներին։ Այդ շարժման արմատավորմամբ ծնունդ առավ մեկ այլ յուրօրինակ նախաձեռնություն։ Բանն այն է, որ միավորման արտադրանքի մի զգալի մասը իրացնում է Երևանի պետական հանրախանութը։ Եվ ահա սկսեցին միմյանց հետ մրցել արտադրողներն ու իրացնողները։ Նրանցից առաջինը երկրորդի հետ մրցության մեջ է մտել «Արտադրել գերազանց», իսկ երկրորդը առաջինի հետ՝ «Վաճառել գերազանց» նշանաբանով։ Այժմ միավորման արտադրանքի ընդհանուր



ծավալի կեսից ավելին թողարկվում է որակի պետական նշանով և իրացվում մեծ հաջողությամբ։

ՀԿԿ Երևանի քաղկոմի նախաձեռնությամբ 1982 թ. սկսած մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում անցկացվում է արտադրության աճի նոր ռեզերվների հայտնաբերման, խնայողության ռեժիմի ուժեղացման և աշխատանքային կարգապահության ամրապնդման ստուգատես-մրցույթ։ Դրա արդյունքների ամփոփման և մասնակիցներին գործնական օժանդակություն ցույց տալու նպատակով ստեղծվել են քաղաքային և շրջանային հանձնաժողովներ։ Նման հանձնաժողովներ են գործում նաև արտադրամիավորումներում և նրանց ստորաբաժանումներում, ձեռնարկություններում, արտադրական բնույթի կազմակերպություններում։ Հանձնաժողովները պարբերաբար ուսումնասիրում են ստուգատես-մրցույթի ընթացքը և միջոցներ ձեռնարկում լավագույն արդյունքների հասնելու համար։

Սոցիալիստական մրցության հաջող կազմակերպման և ծավալման գործում մեծ դեր են խաղում արդյունաբերական ձեռնարկություններում կազմակերպված առաջավոր փորձի տարածման դպրոցները։ Այդպիսիք կան հանրապետության գրեթե բոլոր շրջաններում։ Դպրոցների մեծ մասում ուսումնասիրվում և արմատավորվում են անվանի վարպետ-դաստիարակների աշխատանքի առաջադիմական ձևերն ու մեթոդները։ Իսկ դա հսկայական արդյունք է տալիս ոչ միայն տնտեսական, այլև դաստիարակչական առումով։

Սոցիալիստական մրցությունը լայն ծավալ է ստացել նաև գյուղատնտեսության ասպարեզում։ Զգալի դրական փորձ է կուտակվել Հրազդանի, Արարատի, Էջմիածնի, Ախուրյանի, Նաիրիի, Հոկտեմբերյանի և այլ շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Գյուղատնտեսության բնագավառում ևս շատ կարևոր են մրցության գործնական կազմակերպումը, դրա արդյունավետության և հրապարակայնության ապահովումը։ Հատկանշական է, որ Արթիկի, Կամոյի, Հոկտեմբերյանի, Սիսիանի, Ախուրյանի և այլ շրջաններում գարնանացանի և բերքահավաքի ընթացքում սոցմրցության ամենօրյա արդյունքներն ամփոփելու համար ստեղծվում են օպերատիվ շտաբներ։ Այդպիսի կենտրոն է գործում նաև հանրապետության մասշտաբով։ Այն մամուլի միջոցով լուսաբանում է մրցության ընթացքը, նշում հաջողություններն ու թերացումները, գյուղի աշխատավորների ուժերը մոբիլիզացնում՝ լուծելու առաջադրված խնդիրները։

Կոլտնտեսություններում և սովխոզներում ծավալված մրցության կոնկրետ ձևերը բխում են տարբեր գոտիներում գյուղատնտեսության զարգացման և աշխատանքի հանրապետական բաժանման առանձնահատկություններից։ Արարատյան դաշտի, նախալեռնային գոտու և հյուսիսարևելյան շրջաններում մրցությունը զարգանում է հիմնականում այգեգործության և բանջարաբուծության, Կալինինոյի, Ստեփանավանի, Ախուրյանի և այլ շրջաններում՝ անասնապահության, Վարդենիսի, Անիի, Արթիկի և Ախուրյանի շրջաններում՝ հացահատիկի, Սպիտակի, Ախուրյանի և Արթիկի շրջաններում՝ շաքարի ճակնդեղի արտադրության արդյունավետության համար։ Այդ առանձնահատկություններով են պայմանավորված նաև ծնունդ առնող հայրենասիրական շարժումները։

Սոցիալիստական մրցության առանձնահատկություններից մեկը նրա լայն մասսայականությունն է։ Մեր երկրում այժմ սոցմրցությանը մասնակցում է ավելի քան 110 միլիոն մարդ։ 72 միլիոն մարդ ներգրավված է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման մեջ։ Աշխատավորական կոլեկտիվների ինտերնացիոնալ դաստիարակության, առաջադրված խնդիրների լուծման զորեղ միջոց է եղբայրական հանրապետությունների համանման ձեռնարկությունների, ինչպես նաև կոլտնտեսությունների ու սովխոզների մրցությունը։ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի կոլեկտիվը, օրինակ, մրցում է Վիլնյուսի «Կոմունարիս», Թբիլիսիի Ս. Մ. Կիրովի անվան և Օդեսայի Վ. Ի. Լենինի անվան նույնատիպ ձեռնարկությունների կոլեկտիվների հետ։ Մեկ տասնամյակից ավելի է, ինչ միմյանց հետ մրցում են Երևանի Վ. Ի. Լենինի անվան, Մինսկի, Կիևի և Ռիգայի էլեկտրամե-

Ժողովրդի բարեկեցության խնդիրների լուծման գլխավոր պայմանը էկոնոմիկայի համակողմանի ինտենսիֆիկացման հիման վրա աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության մշտական բարձրացումն է։ Այդ համապարփակ արդյունքն ունի իր գումարելիները՝ հիմնական ֆոնդերի ավելի լավ օգտագործում, նյութական և աշխատանքային ռեսուրսների ըստ ամենայնի խնայողություն, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների լայն և արագ ներդրում, արտադրանքի որակի բարելավում, անթերի կազմակերպվածություն, բարձր կարգապահություն և այլն։ Ընթացիկ հնգամյակում աշխատավորների սոցմրցությունը ծավալվում է այդ խնդիրների լուծման նշանաբանով։ Դրա վկայության օրինակները բազում են։ Այսպես, Երևանի Լենինյան շրջանի աշխատավորները, ներգրավվելով սոցմրցության մեջ, խոստացել են ընթացիկ տարում խնայողության խստագույն ռեժիմի կիրառմամբ տնտեսել երեք հազար տոննա սև մետաղ, 30 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 15 տոննա պայմանական վառելիք, գյուտերի և նորարարությունների ներդրումից ստանալ 2,5 միլիոն ռուբլու տնտեսական օգուտ։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումը խնդիր դրեց կուսակցական կազմակերպությունների և արտադրական կոլեկտիվների առջև՝ մրցություն ծավալել աշխատանքի արտադրողականությունը արտապլանային կարգով մեկ տոկոսով բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքը 0,5 տոկոսով լրացուցիչ իջեցնելու համար։ Այդ թվերը թեև արտաքուստ փոքր են, սակայն մեծ խորհուրդ ունեն։ Չէ՞ որ երկրի մասշտաբով դրանց շնորհիվ ստեղծված տարեկան արդյունքը և օգուտները հաշվվում են միլիոնավոր ռուբլիներով։

Փորձը ցույց է տվել, որ սոցմրցության ընթացքում ավելի լրիվ են ի հայտ բերվում արտադրության զարգացման ռեզերվները։ Իսկ դա բազա է ստեղծում մրցության շրջագծում նոր պրոբլեմներ ընդգրկելու համար։ Պատահական չէ, որ արժեքավոր նախաձեռնությունները ծնվում են ամեն օր, ամեն ժամ։ Կուսակցությունը պահանջում է ժամանակին նկատել դրանք, աջակցել ու զարգացնել, մշտական սևեռուն ուշադրություն նվիրել դրանց։ Այսօր, առավել ուշագրավ է «Հայրենական պատերազմի 40-ամյակին՝ 40 հարվածային շաբաթ» նախաձեռնությունը, որը լայն տարածում է գտել հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, շատ պետական ու կոլեկտիվ տնտեսություններում։

Մտնել միմյանց հետ սոցմրցության մեջ, նշանակում է առաջ ընթանալ և ընդհանուր հաջողությունների հասնել միասին։ Այնքան էլ կարևոր չէ, թե մրցության մեջ ով է հաղթում։ Գլխավորն այստեղ այն է, որ մրցությունից շահում են կոլեկտիվը, ողջ ժողովուրդը, երկիրը։ Այդ մասին լավ է ասել Մ. Ի. Կալինինը. «Երբ ես ինչ որ բանում մրցում եմ իմ բարեկամի հետ և տեսնում, որ նա հաղթում է ինձ, ապա, իհարկե, մի քիչ ցանկալի չէ, որ նա ինձնից առաջ է գնում, որովհետև ես կցանկանայի առաջ անցնել, հաղթել նրան։ Ուստի ինձ մոտ ակամա միտք է ծագում, որ նոր մրցության տուրում ես անպայման պետք է առաջ անցնեմ, հաղթեմ նրան։ Եվ, մոտավորապես այդպես է իրեն զգում սովետական ամեն մի մարդ մեր խաղաղ, բարեկամական աշխարհում։ Դա կոչվում է ընկերական, սոցիալիստական մրցություն։ Միևնույն ժամանակ այդ մրցության մեջ ամեն մեկը ուրախանում է մյուսի հաջողությամբ ու հաղթանակով, թեև մենք բոլորս էլ մարդ ենք և մի փոքր ափսոսում ենք. ինչո՞ւ, իբր, ես ետևում եմ, իսկ նա առջևում, ինչո՞ւ ինձ հաղթեցին»։

Մեծ խորհուրդ ունի սոցիալիստական մրցությունը։ Մտնելով մրցության մեջ, մարդն ստանձնում է որոշակի պարտավորություններ, որոնք պետք է ոչ միայն կատարի, այլև կատարի օրինակելի ձևով, ավելի լավ, քան մրցակիցը։ Մյուս կողմից, մրցության ընթացքում է, որ յուրաքանչյուր աշխատող կարողանում է դրսևորել կոլեկտիվի նկատմամբ իր համակրանքը, ձեռնարկության արտադրանքի պատվի համար՝ իր պատասխանատվության զգացումը, իր մասնագիտական հպարտությունը։ Այս ամենը, անշուշտ, բխում է սոցիալիստական մրցության ստեղծարար բնույթից։

---



# ԱԳՐԱՐԱՅԻՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

**Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ, սովետական ժողովրդի ուշադրության կենտրոնում են ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հոկտեմբերյան պլենումի փաստաթղթերը, որտեղ հանգամանորեն շարադրված են կոմունիստական շինարարության արդի փուլում մեր երկրի առջև ծառացած առանցքային պրոբլեմները։ Իր տնտեսական քաղաքականության մեջ կուսակցությունը բացառիկ մեծ նշանակություն է տալիս գյուղատնտեսական արտադրության կայունության բարձրացմանը՝ որպես ամբողջ ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման կարևորագույն պայմանի։

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումը հաստատեց երկրի պարենային ծրագիրը, որի կատարման առաջին արդյունքներին էր նվիրված ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմների շուրջ ընթացիկ տարվա մարտին հրավիրված համամիութենական տնտեսագիտական խորհրդակցությունը։ Խորհրդակցության նյութերն ամփոփված են վերջերս լույս ընծայված Ագրարային էկոնոմիկայի ռեզերվները* գրքում։

Գիրքը բացվում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի հակիրճ, բայց բովանդակալից ելույթով, որտեղ շարադրված է կուսակցական կազմակերպությունների, ագրոարդյունաբերական համալիրի աշխատողների առջև ծառացած խնդիրների էությունը, հստակ ցուցումներ են տրված դրանց գործունեության հիմնական ուղղությունների վերաբերյալ։ «Կուսակցությունը,— նշում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— գյուղատնտեսության զարգացման նկատմամբ հոգատարությունը դիտում է ո՛չ միայն իբրև տնտեսական, այլև առաջնահերթ սոցիալ-քաղաքական խնդիր։

Մենք ելնում ենք այն բանից, որ բարձր զարգացած, արդյունավետ գործող ագրոարդյունաբերական համալիրը ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարձրացման, երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետության աճի անհրաժեշտ նախադրյալն է» (էջ 4)։

Գրքում զետեղված են ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը և խորհրդակցության մասնակիցների ելույթները։ Այդ նյութերում պարզորոշ շեշտված է, որ էկոնոմիկայի ասպարեզը եղել և մնում է կենտրոնականը կուսակցության գործունեության մեջ։ Վերջին ժամանակներս ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունն ընդունել են մի շարք որոշումներ, որոնք ուղղված են ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացմանը, գիտատեխնիկական պրոգրեսի արագացմանը, տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը։ Կարևոր է ինտենսիվաց-

---

* Резервы аграрной экономики. Материалы Всесоюзного экономического совещания по проблемам агропромышленного комплекса. М., Политиздат, 1984.

նել ամբողջ էկոնոմիկան և առանձնապես այն հատվածները, որոնց զարգացումը մեծապես պայմանավորում է սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծումը: Այսօր այդպիսի հատված է ագրոարդյունաբերական համալիրը, որտեղ ստեղծվում է երկրի ազգային եկամտի մեկ երրորդը, այստեղ է ձևավորվում պարենային ֆոնդի 95 տոկոսը և ամբողջ ապրանքաշրջանառության ավելի քան 70 տոկոսը: Այսօր խնդիր է դրված ավելի բարձր բնագծերի հասնել գյուղատնտեսական մթերքների արտադրության, ժողովրդին սննդամթերքով ապահովելու գործում: Այդ նպատակին հասնելու հիմնական ուղին գյուղատնտեսության արագ փոխադրումն է զարգացման ինտենսիվ ռելսերի վրա, ստեղծված պոտենցիալից ստացվող հատույցի զգալի բարձրացումը: Դա պահանջում է ագրոարդյունաբերական միավորումների գործունեության վճռական բարելավում, տնտեսագիտական ամբողջ աշխատանքի մակարդակի բարձրացում, տնտեսական բազմազան լծակների լայն կիրառում, կառավարման մեխանիզմի կատարելագործում:

Կուսակցությունը և կառավարությունը մշտապես իրենց տեսադաշտում են պահում գյուղատնտեսության և նրա հետ կապված ճյուղերի զարգացման պրոբլեմները: Բարդ պրոցեսներ են տեղի ունենում մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորում: Շարունակվում է ագրոարդյունաբերական համալիրի ձևավորումը՝ որպես ամբողջական արտադրական համակարգի, որի առջև այսօր բազմաթիվ պրոբլեմներ են ծառանում՝ կապված գյուղի դեմոգրաֆիական իրավիճակի, արտադրության մեջ նոր ռեսուրսների ներգրավման և շատ այլ տեղաշարժերի հետ: Այդ ամենն առաջացնում է հասունացած պրոբլեմների լուծման նկատմամբ նոր մոտեցման անհրաժեշտություն: Եվ կուսակցությունը հետևողականորեն միջոցներ է ձեռնարկում ագրոարդյունաբերական համալիրի առջև ծառացած խնդիրները քայլ առ քայլ լուծելու համար: Այդ նպատակին հատկացվում են վիթխարի կապիտալ ներդրումներ և նյութական ռեսուրսներ:

Գրքում ցույց է տրված, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումների կենսագործման նպատակով կուսակցության ու կառավարության ձեռնարկած միջոցներն իրենց դրական արդյունքներն են տալիս: 1983 թ. աճեց գյուղատնտեսության համախառն արտադրանքը, բարձրացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Գերակատարվեցին անասնապահական մթերքների պետվաճառքի պլանները: Վերջին ինը տարվա ընթացքում առաջին անգամ բոլոր հանրապետությունները կատարեցին անասնապահական հիմնական արտադրատեսակների մթերումների առաջադրանքները:

Համոզիչ փաստերով ներկայացված են կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական գործունեության դրական տեղաշարժերը: Ընդհանուր շահութաբերության մակարդակը հասել է 21 տոկոսի: Առանց գնման գների և դրանց հավելումների բարձրացումը հաշվի առնելու, անցած տարի շահույթն ավելացավ 7,4 միլիարդ ռուբլով, իսկ ամբողջությամբ վերցված այն կազմեց 23,3 միլիարդ ռուբլի: Ամրապնդվում է կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան: Արագացել են գյուղում կատարվող սոցիալական վերափոխումների տեմպերը, մեծացել են բնակարանային, ժողովրդական կրթության, կուլտուրկենցաղային և առողջապահության օբյեկտների շինարարության մասշտաբները: Այդ հաջողություններն առանձնապես ցայտուն են երևում մեր հանրապետության օրինակով, որի մասին հանգամանորեն խոսեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը Կենտկոմի 1984 թ. սեպտեմբերյան պլենումում:

Համամիութենական խորհրդակցությունում առաջադրված խնդիրների լույսի ներքո լայնորեն քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների, պարենային ծրագրի կենսագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների գործունեության առաջին արդյունքները:

Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի աշխատողները,



հետևողականորեն իրականացնելով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և հետագա պլենումների որոշումները, զգալի հաջողությունների են հասել հնգամյակի անցած երեք տարվա պլանային առաջադրանքների կատարման գործում: Այդ ժամանակաշրջանում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալի աճը կրկնապատիկ գերազանցել է պլանով նախատեսված տեմպերը, սահմանվածից ավելի ստացվել է 127 միլիոն ռուբլու արտադրանք:

Մեր էկոնոմիկայի ագրարային հատվածում ձեռք բերված հաջողությունները դաշտերի ու ֆերմաների, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր աշխատողների անձնվեր ջանքերի, կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական մեծ աշխատանքի, սոցիալիստական մրցության լայն ծավալման, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ներդրման արգասիք են:

Այսուհանդերձ գյուղատնտեսության մեջ դեռևս անբավարար են օգտագործվում առկա ռեզերվներն ու հնարավորությունները, մի շարք տեղերում դանդաղ է աճում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը:

Չնայած ագրարային հատվածում նկատվող հուսադրող տեղաշարժերին, ընդհանուր վիճակը գոհացնել չի կարող: Գրքում հրապարակված նյութերում մանրամասն վերլուծվում է պարենային ծրագրի կատարման ընթացքը: Երկրի մի շարք շրջաններում, հարաճուն ռեսուրսների առկայության պայմաններում, ընթացիկ հնգամյակում պակասել է գյուղատնտեսական շատ մթերքների արտադրությունը: Հաճախ միանման բնակլիմայական պայմաններում գտնվող մարզերն աշխատում են տարբեր ձևով, ունեն ամենևին ոչ միատեսակ արդյունքներ: Այդպիսի փաստեր կան նաև մեր հանրապետությունում, երբ առանձին շրջաններ և նույնիսկ կոլտնտեսություններ ու սովխոզներ, գտնվելով միևնույն պայմաններում, հաճախ նաև կից ցանքադաշտերում, բերքատվության միանգամայն տարբեր ցուցանիշների են հասնում:

Խորհրդակցությունում լուրջ հետևություններ արվեցին գյուղատնտեսական արտադրության առանձին տեղամասերի ետ մնալը հաղթահարելու վերաբերյալ: Այդ նպատակով կարևորվեց այնպիսի միջոցառումների համակարգի իրականացումը, որոնք ապահովեն հացահատիկի արտադրության աճը և յուրաքանչյուր տնտեսության ու շրջանի, յուրաքանչյուր հանրապետության կողմից պետությանն արտադրանքի վաճառքի սահմանված առաջադրանքների անվերապահ կատարումը ոչ միայն ըստ ընդհանուր ծավալի, այլև յուրաքանչյուր կուլտուրայի: Խնդիր է դրված վճռականորեն շտկել ուժեղ և պինդ սորտերի պարենային բարձրորակ ցորենի արտադրության բնագավառում տիրող վիճակը:

Վերլուծելով ագրոարդյունաբերական համալիրի էկոնոմիկայի ամրապնդման հանգուցային հարցերը, գրքի հեղինակները նշում են, որ ինտենսիվացման պրոցեսը չի կարելի հանգեցնել միայն ֆոնդերի կուտակման: Ինտենսիվացման մեջ գլխավորն այն է, որ ավելանա արտադրանքի ստացումը՝ առկա և նոր հատկացվող նյութական ու ֆինանսական միջոցների մեկ միավորի հաշվով: Անասնապահության ինտենսիվացման նշանակության մասին համոզիչ կերպով վկայում են գրքում կատարված հաշվարկները: Անասնապահական մթերքների արտադրության պարենային ծրագրով նախատեսված աճն ապահովելու համար, մթերատվության արդի մակարդակի պայմաններում, պահանջվում է անասնագլխաքանակն ավելացնել 35 միլիոն պայմանական գլխով, նոր անասնապահական օբյեկտների կառուցման համար հատկացնել 35 միլիարդ ռուբլի և այդ ճյուղում լրացուցիչ աշխատանքի ուղարկել մեկ միլիոն մարդ: Սակայն էքստենսիվ զարգացման այդպիսի ուղին անընդունելի է: Միայն տնտեսության ինտենսիվ զարգացումը հնարավորություն կընձեռի հասնելու կաթի և մսի արտադրության ավելացման նոր բնագծերի:

Ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերում այսօր կուտակված է հսկայական արտադրական պոտենցիալ և խնդիրը բոլոր կարողությունների և

րոարդյունաբերական միավորումների, կուսակցական և սովետական մարմինների կարևորագույն խնդիրներից են։

Ստեղծված պոտենցիալի արդյունավետ օգտագործումը նախ և առաջ պայմանավորված է մարդկանցով, նրանց աշխատանքով։ Կարևոր է գործն այնպես կազմակերպել, որ մարդիկ պարզ տեսնեն վերջնական նպատակը, ձգտեն դրան, զգան իրենց աշխատանքի և դրա վարձատրության անմիջական կապը։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և հետագա պլենումները մեծ նշանակություն տվեցին կոլեկտիվ կապալի լայն ներդրմանը, որպես գյուղատնտեսության աշխատողների ակտիվության բարձրացման, կարգապահության ու տնտհաշվարկի ամրապնդման, պարենային ծրագրի հաջող կատարման կարևորագույն միջոցի։ Մեր հանրապետության փորձը ցույց է տալիս, որ նման բրիգադներն ու օղակները, գտնվելով միանման պայմաններում, հողատարածության միավորից 20—30 տոկոսով ավելի շատ արտադրանք են ստանում։ Այդ կոլեկտիվներում զգալիորեն բարձր է աշխատանքի արտադրողականությունը, ցածր է արտադրանքի ինքնարժեքը, տնտեսվում են նյութական ու հումքային ռեսուրսները։ Սակայն կոլեկտիվ կապալը տակավին դանդաղ է արմատավորվում։ Նման դրության հիմնական պատճառն այն է, որ կուսակցական և տնտեսական մարմիններն ակտիվորեն չեն ղեկավարում կոլեկտիվ կապալի արմատավորման պրոցեսը, լայնորեն չեն պրոպագանդում աշխատանքի կազմակերպման ու խթանման նոր ձևերի առավելությունները։

Կյանքը հաստատում է կոլեկտիվ կապալի բարձր արդյունավետությունը, կարևոր է այսուհետ ևս սևեռուն ուշադրություն նվիրել դրան, այն ավելի ակտիվորեն ներդնել պրակտիկայում։

Շրջանային ագրոարդյունաբերական միավորումները ուշադրությունը կենտրոնացնում են էկոնոմիկայի հիմնական պրոցեսների վրա, կարգավորվում են միջճյուղային կապերը։ Սակայն դեռևս բնավ էլ բոլոր միավորումները չեն, որ հստակորեն են ըմբռնել վերակառուցման էությունը։ Նրանց պակասում են նախաձեռնությունն ու գործարարությունը։ Ագրոարդյունաբերական միավորումներին բավականաչափ լիազորություններ են տրված գործերն արդյունավետորեն վարելու համար։

Դեռևս շատ են գանգատները պարտնյորների աշխատանքի որակից, սպասարկումների թանկությունից։ Հաճախ նվազեցվում է ընդունվող արտադրանքի սորտայնությունը, կատարվում են հավելագրումներ, իսկ երբեմն էլ հաշվի մեջ խաբում են տնտեսություններին։

Հրատապ խնդիր է վերամշակող արդյունաբերության զարգացումը, մթերքների պահպանման ու փոխադրման բազայի ընդլայնումը։ Հսկայական միջոցներ ներդնելով հացահատիկի, բանջարեղենի, կաթի արտադրության ավելացման համար, հաճախ արտադրանքի զգալի կորուստներ են տրվում այն ժամանակին չվերամշակելու, վատ պահելու, տարայի պակասության պատճառով։ Գրքի հեղինակները կարևոր են համարում տասներկուերորդ հնգամյակի պլանները մշակելիս լրացուցիչ միջոցներ նախատեսել գյուղատնտեսական մթերքների վերամշակման, պահպանման ու փոխադրման բազայի հաշվեկշռված զարգացման համար։

Տնտեսավարման նոր պայմաններում, երբ վճռական նշանակություն է ստանում ինտենսիվացումը, գիտատեխնիկական նվաճումների արագացված ներդրումն արտադրության մեջ, բարձրանում են գիտությունների ակադեմիայի և գյուղատնտեսական գիտահետազոտական հաստատությունների դերն ու պատասխանատվությունը։ Վերջին տարիներին նրանք էական շրջադարձ են կատարել դեպի գյուղատնտեսական արտադրության հրատապ պրոբլեմները։ Սակայն կյանքը նորանոր բարձր պահանջներ է առաջադրում գիտությանը։ Գիտնականների ստեղծագործական պոտենցիալը պետք է նպատակամղվի գյուղատնտեսության զարգացման արագացմանը, այնպիսի կարևորագույն պրոբլեմների մշակումներին, ինչպիսիք են պլանավորման կատարելագործումը, ինտենսիվացումը, մասնագիտացումն ու համակենտրոնացումը, ագրոարդյունաբերական արտադրության տեղաբաշխումը, արտադրական պոտենցիալի ռացիոնալ օգտագործումն ու գյուղի սոցիալական զարգացումը։

Բացի այդ, ըստ մեր հանրապետության յուրահատուկ պայմանների, հարկավոր է բարելավել մշակության մեքենայացման պահանջներին համապատասխանող գյուղատնտեսական կուլտուրաների, խաղողի նոր ցրտադիմացկուն սորտերի, սպիտակուցի մեծ պարունակություն ունեցող կերաբույսերի ներդրման աշխատանքը։ Մեր գիտահետազոտական հիմնարկությունների առջև լուրջ խնդիրներ են դրված լեռնային պայմաններում աշխատատար պրոցեսների մեքենայացման, անասունների տոհմային և սելեկցիոն աշխատանքի բարելավման, կերատեսակների մշակման կատարելագործման, կենդանիների խնամքի ու բուժման բնագավառներում։

Գրքում խորությամբ քննարկվում են անասնապահության ինտենսիվացման պրոբլեմները։ Այդ ճյուղի մթերատվությունը դեռևս բարձր չէ, որը հիմնականում կերի անբավարար բազայի հետևանք է։ Մեր հանրապետությունում մշակվել և իրականացվում է կերարտադրության ինտենսիվացման, կերահանդակների արդյունավետության բարձրացման և ցանքատարածությունների կառուցվածքի բարելավման լայն ծրագիր։ Ընթացիկ հնգամյակի առաջին տարիների արդյունքները վկայում են, որ կերի բազան նկատելիորեն ամրապնդվում է։ Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում ամեն տարի կուտակվում է 2,5 միլիոն տոննա կոշտ և հյութալի կեր։ Սակայն կերարտադրության ձեռք բերված մակարդակը դեռևս չի կարելի բավարար համարել։ Շատ շրջաններում դանդաղ է արմատավորվում կերի կուտակման և կենդանիների կերակրման առաջավոր տեխնոլոգիան, մեծ են կորուստները կերերի կուտակման, պահպանման ու վերամշակման պրոցեսում, պատշաճ ուշադրություն չի դարձվում կերի որակին, թույլ են տրվում սննդարարության մեծ կորուստներ։

Հրապարակված նյութերում կարևորվում է կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ֆունկցիաների առավել հստակ սահմանազատման մասին ՍՄԿԿ Կենտկոմի պահանջի հետևողական իրականացումը։ Նոր երևույթ չէ, երբ կուսակցության որոշ կոմիտեներ փոխարինում են տնտեսական մարմիններին, շրջանցում են նրանց՝ ընթացիկ տնտեսական հարցերը լուծելիս, միջամտում են այնպիսի գործերի, որոնք մտնում են տնտեսությունների մասնագետների ու ղեկավարների անմիջական իրավասության ներքո։ Դա հանգեցնում է հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվության նվազեցման։ Կուսակցական կոմիտեների հիմնական պարտականությունն է հանձնարարված գործի, արտադրության վերջնական արդյունքների համար կադրերի պատասխանատվության սիստեմատիկ բարձրացումը։ Տնտեսությամբ զբաղվելը նրանց համար նշանակում է աշխատել նախ և առաջ մարդկանց, կադրերի հետ։

Գրքում համակողմանիորեն ներկայացված են ագրոարդյունաբերական համալիրի հետագա զարգացման հրատապ պրոբլեմները ընթացիկ հնգամյակի առաջադրանքների կատարման համար մղվող պայքարի վճռական փուլում։

Կարդալով այս ուսանելի գիրքը, կրկին համակվում ես այն խոր գիտակցությամբ, որ մեր երկրի առաջընթաց զարգացման գործում իր վճռական դերն ունի ագրոարդյունաբերական համալիրը՝ սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման, երկրի ողջ պոտենցիալի հետագա աճի կարևոր լծակը։ Դա մի նոր ուժով հաստատվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հոկտեմբերյան պլենումում։

# ՀԶՈՐԱՆՈՒՄ ԵՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԵՎԵՐԸ

**Գ. ԱԹԲԱՇՅԱՆ**
Քաղաքացիական ավիացիայի
հայկական վարչության պետ

ՕՐԱՎՈՒՐ ԱՃՈՒՄ Է ԱՎԻԱՑԻԱՅԻ ԴԵՐԸ երկրի կյանքում: Այն արդի գիտատեխնիկական առաջընթացի արտահայտություններից է, նորի ու առաջադիմականի մարմնացումը:

Սովետական մարդիկ իրավամբ հպարտանում են, որ իրենց երկիրն է ավիացիայի օրրանը: Մեծ Հոկտեմբերը նոր փուլ նշանավորեց հայրենական ավիացիայի առաջընթացի գործում, նրա հետագա զարգացումն անմիջականորեն կապված է կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի անվան հետ: Լենինի անմիջական նախաձեռնությամբ ընդունվեցին կարմիր օդային նավատորմի կազմակերպման վերաբերյալ հիմնարար որոշումները, որոնցում հեռատեսորեն նշված են ոչ միայն տրանսպորտի ու կապի այս կարևոր տեսակի դերը խաղաղ պայմաններում, այլև հեղափոխական նվաճումների պաշտպանության գործում:

Գիտության ու տեխնիկայի աննախընթաց զարգացումն ամուր բազա ստեղծեց սովետների երկրի օդային նավատորմի հետագա վերելքի համար, այն կարճ ժամանակամիջոցում դարձավ աշխարհի առաջատար պետություններից մեկը ավիացիայի բնագավառում: ՍՍՀՄ-ն աշխարհում առաջին տեղում է օդային գծերի ընդհանուր երկարությամբ: Բուռն տեմպերով աճում են ուղևորների, փոստի և բեռների օդային փոխադրումները: Մշտապես ընդլայնվում է ավիացիայի կիրառման ոլորտը, այն ակտիվորեն մասնակցում է երկրի պարենային ծրագրի իրականացմանը:

Քաղաքացիական ավիացիային առաջադրված խնդիրների լուծման գործում արժանի ավանդ են ներդնում Հայաստանի ավիատորները: Կուսակցության և կառավարության մշտական հոգատարության շնորհիվ հայկական վարչությունը պատմական կարճ ժամանակամիջոցում վերածվել է ավիատրանսպորտային ձեռնարկությունների հզոր համակարգի:

Հանրապետության օդանավագնացության հաջողությունները լավ պատկերացնելու համար հետաքրքրական է ետադարձ հայացք գցել նրա անցած ուղուն: Մեր երկնակամարում մարդատար ինքնաթիռների կանոնավոր թռիչքներն սկսվեցին 1933 թվականին Թբիլիսի—Երևան երթուղիով: Առաջին ուղերթը կատարեց Կ—5 ինքնաթիռը՝ օդաչու Բրոնչենկոյի և մեխանիկ Գորբունովի ղեկավարությամբ: Այդ ժամանակ թռիչքներ էին գործում նաև ՍՏԱԼ—2 և ՈՒ—2 ինքնաթիռները: 1933 թվականի ընթացքում փոխադրվել է 309 ուղևոր, 15 տոննա փոստ և 42 տոննա բեռ: Այդ նույն թվականին օդային գծերը Երևանից ձգվեցին դեպի բարձր լեռնային շրջանները՝ Բասարգեչար և Սիսիան:

Սակայն Հայաստանում օդային հաղորդակցության ծննդյան իսկական տարեթիվը պետք է համարել 1938 թվականը, երբ ՍՍՀՄ ժողովրդական կոմիսարների խորհրդի որոշմամբ վերակառուցվեց քաղաքացիական ավիացիայի



Անդրկովկասյան վարչությունը և ստեղծվեց հայկական առանձին ջոկատ: Այդ տարիներին ջոկատն ուներ հինգ օդանավակայան և տասը օդանավ:

Հանրապետությունում քաղաքացիական ավիացիան հատկապես բուռն զարգացում ապրեց վերջին տասը-տասնհինգ տարիներին, երբ ուղևորների փոխադրումների ծավալն աճեց 46,7 տոկոսով, դա զգալիորեն գերազանցում է Աերոֆլոտի միջին ցուցանիշը: Հայաստանում քաղաքացիական ավիացիայի զարգացման գործում մեծ նշանակություն ունեցավ նոր օդանավակայանների կառուցումը: Ասենք, որ միայն նորակառույց «Արևմտյան» օդանավակայանից դեռ 1981 թ. ՏՈՒ—154 և ՏՈՒ—134 ինքնաթիռներով փոխադրվեց մեկ միլիոնից ավելի ուղևոր: Հանրապետության կյանքում մեծ է օդագնացության նշանակությունը. օդային փոխադրումների տեսակարար կշիռն ավելի քան երեք անգամ գերազանցում է երկաթուղային տրանսպորտինը: 1983 թվականին հայկական վարչության ինքնաթիռները փոխադրել են մեկ միլիոն 268 հազար մարդ, 3,2 հազար տոննա փոստ և 12,3 հազար տոննա շտապ ուղարկվելիք բեռներ: Քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության կոլեկտիվը հաջողությամբ է կատարել տասնմեկերորդ հնգամյակի երեք տարիների պետական առաջադրանքները, պլանից ավելի փոխադրելով 155 հազար ուղևոր և 3.104 տոննա փոստ ու բեռներ:

Հայաստանում քաղաքացիական ավիացիայի զարգացումը դարձել է եղբայրական մյուս հանրապետությունների և տնտեսական շրջանների հետ գործարար ու բարեկամական կապերի ընդլայնման ազդակ: Բավական է նշել, որ օդային ճանապարհով ամեն օր Երևանից Մոսկվա են մեկնում ավելի քան 2.000 ուղևորներ: Կայուն հաղորդակցություն է հաստատվել Երևանի և Ուկրաինայի խոշորագույն քաղաքների՝ Կիևի, Օդեսայի, Սիմֆերոպոլի, Խարկովի, Լվովի, Դոնեցկի, Դնեպրոպետրովսկի միջև: Այդ ճանապարհներին հատուկ բեռնատար ինքնաթիռներ չեն երթևեկում, սակայն մարդատար ինքնաթիռներով մշտապես փոխադրվում են շտապ բեռներ: Հայաստանից Ուկրաինա է առաքվում կաուչուկ, ռետին, կաբելային և այլ արտադրանք: Ուկրաինական օդանավակայաններից Հայաստան են փոխադրվում էլեկտրասարքեր, հաստոցների պահեստամասեր և այլն:

Հանրապետությունում քաղաքացիական ավիացիայի զարգացման խոշոր ազդակ հանդիսացավ «Զվարթնոց» օդանավակայանի համալիրի կառուցումը: Այն ոչ միայն Միության, այլև Եվրոպայի մասշտաբով առաջնակարգ օդանավակայան է և կարող է մեկ ժամում սպասարկել 2.100 ուղևորի: Համալիրը լրիվ գործարկելուց հետո յուրաքանչյուր հատվածում կունենա տելեսկոպային երկու մուտքասանդղակ, որի միջոցով ուղևորներն ինքնաթիռ սրահ կհասնեն՝ կտրելով ընդամենը 30 մետր ճանապարհ:

Օդանավակայանի համալիրի արդիական կառամատույցը հագեցված է նորագույն ինժեներական սարքավորումներով և կոմունիկացիաներով, որոնք հնարավորություն են ընձեռում միաժամանակ լիցքավորելու և տեխնիկապես սպասարկելու տարբեր տիպի 14 ինքնաթիռներ: Տեխնոլոգիական կատարյալ սարքավորումների շնորհիվ առավելագույնս մեքենայացված և ավտոմատացված են աշխատատար արտադրապրոցեսները: Համալիրում հաջողությամբ են գործում ուղեբեռների հանձնման, տոմսերի հաշվառման, ավտոմատ դռների համակարգերը, տեղեկատու և այլ ծառայությունները:

Մեծ է քաղաքացիական ավիացիայի դերը հանրապետության հեռավոր շրջանների տնտեսական զարգացման, ինչպես նաև մայրաքաղաքի, իսկ Երևանի միջոցով նաև երկրի հետ նրանց կապերի ամրապնդման ու ընդլայնման գործում: Տեղական ավիագծերի հետագա ընդլայնումը պայմանավորված է հանրապետության ժողովրդական տնտեսության վիթխարի տեղաշարժերով և ավիափոխադրումների աճող պահանջարկով: Այդ խնդրի հաջող լուծմանը մեզ մեծ օգնություն է ցույց տալիս ՍՍՀՄ քաղաքացիական ավիացիայի մինիստրությունը: Մենք մշտապես զգում ենք ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության կառավարության հոգատարությունը: Այդ ամենի շնորհիվ մեր կոլեկտիվը 70-ական թվականների սկզբից կարողացավ իրականացնել շինարարական աշ-

խատանքների մեծ ծրագիր: Դա լուրջ քայլ էր Հայաստանի աէրոֆիկացման ճանապարհին:

Վերջին մեկ և կես տասնամյակում հանրապետության մի շարք բնակավայրերի՝ Լենինականի, Ղափանի, Գորիսի, Ջերմուկի, Բերդի, Ստեփանավանի օդանավակայաններում կառուցվել կամ վերակառուցվել են թռիչքավայրէջքային ուղիներ՝ արհեստական ծածկույթով: Հարկ է նշել հանրապետության երկրորդ քաղաքի՝ Լենինականի օդանավակայանի նոր համալիրի շինարարության, օդագնացության արդիական համակարգերի ներդրման ու զարգացման հեռանկարների մասին: Այսօր Լենինականից ուղևորները թռչում են Մոսկվա և երկրի 10 այլ արդյունաբերական կենտրոններ ու առողջարանային քաղաքներ: Ընդ որում այժմ նրանց սպասարկում են ոչ միայն ՅԱԿ—40, այլև ՏՈՒ—134 հարմարավետ ինքնաթիռները: Զարգացման լայն հեռանկարներ ունի օդային հաղորդակցությունը Լենինականում: Այստեղ նախապատրաստական աշխատանքներ են տարվում ՏՈՒ—154 և ՅԱԿ—42 նորագույն ինքնաթիռների ընդունման համար: Դրանով մեծ չափով կընդլայնվեն քաղաքի օդային դարպասների հնարավորություններն ու փոխադրումների ծավալները: Կանոնավոր և անվտանգ թռիչքների ապահովման համար նշված բոլոր օդանավակայանները կահավորված են օդանավագնացության և կապի արդի միջոցներով:

Սակայն ներկա պայմաններում, երբ մշտապես աճում են հանրապետության պահանջմունքները ավիափոխադրումների նկատմամբ, շատ շրջաններում ավիացիայով բնակչության ապահովվածությունը չի համապատասխանում առկա հնարավորություններին: Այդ խնդիրը լուծելու նպատակով հաջողությամբ իրականացվում է արհեստական ծածկույթով թռիչքուղիների կառուցումը Սիսիանում, Վարդենիսում, Մեղրիում: Նախատեսվում է բարեկարգել Մարտունիի օդանավակայանը:

Հաշվի առնելով տեղական օդային գծերի զարգացման հեռանկարները, վարչության ղեկավարությունը, կուսակցական և հասարակական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում տեղական օդանավակայանների աշխատողների մասնագիտական որակավորման բարձրացմանը, տեղում մասնագետ կադրերի ամրակայմանը: Շատ աշխատողներ, առանց արտադրությունից կտրվելու, սովորում են քաղաքացիական ավիացիայի ուսումնական հաստատություններում: Մասնագիտական կողմնորոշման աշխատանքներ են տարվում նոր համալրում ներգրավելու համար:

Ընդլայնվում են նաև Երևանի հարավային օդային դարպասները: Այստեղ գործարկվել է «Էրեբունի» նոր օդանավակայանը, որը լայն հնարավորություն է ընձեռում տեղական հաղորդակցության հետագա զարգացման համար:

Աշխուժանում է ՀՍՍՀ-ի միջազգային օդային հաղորդակցությունը: Երկար տարիներ գործող Մոսկվա—Երևան—Բեյրութ—Դամասկոս տարանցիկ երթուղուն ավելացել է Երևան—Հալեպ—Դամասկոս երթուղին: Այսպիսով, Երևանը դառնում է ինչպես միութենական, այնպես էլ միջազգային նշանակության օդային խոշոր նավահանգիստ:

Քաղաքացիական ավիացիայի զարգացման արդի փուլի բնորոշ գիծը երկրի սոցիալ-տնտեսական խոշոր խնդիրների լուծման գործում նրա աճող դերն է: Այն դարձել է ժողովրդական տնտեսության շատ ճյուղերի արտադրական-տեխնոլոգիական պրոցեսի անբաժան օղակը: Դրա ցայտուն օրինակը գյուղատնտեսական ավիացիան է, որի միջոցով այսօր կատարվում է ցանքադաշտերում քիմիական միջոցների կիրառման աշխատանքների 40 տոկոսը: Քիմիկատների օգտագործման ավիացիոն մեթոդը տնտեսական արդյունավետությամբ չի զիջում սովորական եղանակին, իսկ մի շարք կարևորագույն ցուցանիշներով նույնիսկ գերազանցում է նրան:

Գյուղատնտեսական ավիացիայի առավելությունը նրա բարձր արտադրողականությունն է և բազմակողմանիությունը, աշխատանքներն ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարելու կարողությունը: Մասնագետների ամենահամեստ հաշվարկներով ավիացիայի կիրառումը հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից առնվազն երկու ցենտներ բերքի հավելաճ է տալիս:



Յուրաքանչյուր մեկ միլիոն հեկտար պարարտացնելիս, գյուղատնտեսական ավիացիան փոխարինում է դաշտավարական բրիգադների մինչև հազար վեց հարյուր աշխատողների և հազար երկու հարյուր տրակտորի: Այսօր ավիացիան իրավամբ ծանրակշիռ ավանդ է ներդնում ցանքերի բերքատվության բարձրացման, հացահատիկի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների արտադրության ավելացման գործում:

Մեր խնդիրն է ժողովրդական տնտեսության մեջ առավելագույն արդյունավետությամբ օգտագործել ավիացիայի հնարավորությունները, կանխել անարտադրողական ծախսերն ու կորուստները: Չէ որ հանրապետությունը տասնմեկերորդ հնգամյակում խաղողի միջին տարեկան արտադրությունը հասցնելով 240—260 հազար տոննայի, տասներկուերորդ հնգամյակում այն պետք է հասցնի մինչև 310—330 հազար տոննայի, հացահատիկի արտադրությունը՝ համապատասխանաբար 310 հազար և 330—340 հազար տոննայի: Ընթացիկ տասնամյակում բանջարբոստանային կուլտուրաների արտադրությունը կավելանա 1,2 անգամ, մրգերինը և պտղինը՝ 1,7 և անասնակերինը՝ 1,4 անգամ: Շահագործման կհանձնվեն 60 հազար հեկտար ոռոգելի հողեր, կբարելավվեն 120 հազար հեկտար արոտավայրեր: Մշտապես աճում են սննդի արդյունաբերության հզորությունները: Հիրավի, խնդիրները շատ են, և մենք՝ ավիատորներս, պարտավոր ենք ծանրակշիռ ավանդ ներդնել դրանց լուծման գործում: Ժողովրդական տնտեսության մեջ ավիացիայի կիրառման ասպարեզում մեր խնդիրն է՝ լիովին և ժամանակին ապահովել ավիածառայությունների նկատմամբ էկոնոմիկայի տարբեր ճյուղերի պահանջմունքները:

Հանրապետության տարածքում, ինչպես նաև նրա սահմաններից դուրս, ժողովրդական տնտեսության մեջ հիմնականում օգտագործվում են Մի—8 ուղղաթիռները, Ան—2 ինքնաթիռը և այլ մեքենաներ: Մեր ավիատորները ակտիվորեն մասնակցեցին Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ գազամուղի շինարարությանը, այժմ էլ կառուցում են այլ գազամուղեր, օգնում երկրաբաններին, պետավտոտեսչությանը, ջրի խողովակներ են տեղափոխում դժվարամատչելի բնակավայրերը: Նրանք քիչ դեր չխաղացին Սիծեռնակաբերդի մարզահամերգային համալիրի շինարարությունում:

Ընդհանուր առմամբ տասնմեկերորդ հնգամյակի անցած երեք տարում ժողովրդական տնտեսությանն սպասարկող հատուկ օգտագործման ավիացիայի աշխատանքների ծավալն աճել է 2,2 անգամ: Սակայն ավիացիայի հնարավորությունները շատ ավելի մեծ են, և մենք կարող ենք զգալի չափով ընդլայնել մեր ծառայությունների ոլորտը: Հանրապետության տարածքում գյուղատնտեսական ավիացիայի կիրառմամբ կարելի է ամեն տարի մշակել երկու միլիոն հեկտար հողատարածություն, որից 800 հազար հեկտարը՝ արոտավայրեր: Սակայն այսօրվա դրությամբ մենք կատարում ենք այդ աշխատանքների 10 տոկոսը: Հարցը նրանում է, որ ոչ բոլոր կազմակերպություններն են դիմում հատուկ ավիացիայի օգնությանը: Մեր կողմից կատարվող ծառայությունների ընդլայնմանը խոչընդոտում է նաև հանրապետությունում ամուր ծածկույթով թռիչքուղիների և հրապարակների բացակայությունը: Դրա հետևանքով ավիաքիմիական աշխատանքներ կատարող անձնակազմերը բազավորվում են տեղական ավիացիայի օդանավակայաններում, որոնք մշակվող ցանքադաշտերից զգալի հեռավորության վրա են գտնվում (մինչև 35—40 կմ): Դրանով իսկ իջնում է արտադրողականությունը, նվազում ինքնաթիռա-ուղղաթիռային պարկի օգտագործման արդյունավետությունը:

Բացի այդ, տնտեսություններում ցածր մակարդակի վրա է քիմիկատների բարձման և բեռնաթափման մեքենայացումը, այդ աշխատանքները հիմնականում կատարվում են ձեռքով: Կան նաև մի շարք այլ հարցեր, որոնց լուծումը մեծապես կնպաստեր ժողովրդական տնտեսության մեջ ավիացիայի դերի առավել մեծացմանը:

Վարչությունում հետևողականորեն աճում է փոխադրական աշխատանքների արդյունավետությունը, նվազում են շահագործման ծախսերը: Ակտիվ պայքար է մղվում խնայողության համար: Անցած տարի, օրինակ, միայն հա-

տուկ օգտագործման ավիացիայի շահագործման ծախսերը կրճատվել են մեկ միլիոն ռուբլով, տնտեսվել է 880 տոննա ավիավառելիք։ Արտապլանային շահույթը կազմել է 800 հազար ռուբլի, իսկ հնգամյակի անցած երեք տարվա հաշվով՝ 2 միլիոն 629 հազար ռուբլի։

Մեր կոլեկտիվում լայն ասպարեզ է տրված նորարարական, ստեղծագործական մտքի զարգացմանը։ Կոլեկտիվի շատ անդամներ հանդես են գալիս ռացիոնալիզատորական առաջարկություններով, որոնց ներդրումը նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Առանձնապես արժանահիշատակ է ՏՈՒ—154 ինքնաթիռներում բազկաթոռների թիվն ավելացնելու վերաբերյալ առաջարկությունը, որի ներդրման շնորհիվ նշված ինքնաթիռների նստելատեղերի թիվը 152-ից հասցվել է 164-ի։

Մեկ ուրիշ օրինակ։ Ինչպես հայտնի է, մեր հանրապետության բնակլիմայական պայմաններում շոգը և աշխարհագրական բարձր դիրքը բացասաբար են անդրադառնում ինքնաթիռների շարժիչների աշխատանքի վրա։ Խափանվում են ինքնաթիռների կանոնավոր թռիչքները, նվազում է օգտակար բեռնվածությունը։ Այսպես, 1983 թ. ամռան օրերին ինքնաթիռների օգտակար բեռնվածությունը հասնում էր հազիվ 42 տոկոսի։ Մեր մասնագետների, ինժեներների ու տեխնիկների նախաձեռնությամբ ՏՈՒ—134 ինքնաթիռներում տեղադրվեցին երրորդ սերիայի շարժիչներ։ Դա հնարավորություն տվեց զգալիորեն ավելացնելու ինքնաթիռների օգտակար բեռնվածությունը։

Ինքնաթիռների սպասարկման առաջավոր եղանակների ներդրման շնորհիվ կրճատվել են օդանավերի պարապուրդները տեխնիկական սպասարկման ընթացքում։ Այսպես, քաղաքացիական ավիացիայի մինիստրության նորմատիվների համեմատ, պարապուրդները ՏՈՒ—154 ինքնաթիռների տեխնիկական սպասարկման ընթացքում նվազել են 52 տոկոսով, իսկ ՏՈՒ—134 ինքնաթիռներինը՝ 61 տոկոսով։

Օդանավերի կանոնավոր և անվտանգ թռիչքների ապահովման գործում կարևոր նշանակություն ունի անձնակազմերի նախապատրաստումը թռիչքների՝ եղանակի իջեցված նվազագույնի պայմաններում։ Մեր վարչությունում պատրաստվում են ՏՈՒ—154 ինքնաթիռների երկրորդ կարգի և առաջին կարգի հրամանատարներ։ Զգալի տոկոս են կազմում ՏՈՒ—134 և ՅԱԿ—40 ինքնաթիռների հրամանատարները, որոնք նախապատրաստված են եղանակի իջեցված նվազագույնի պայմաններում թռիչքներ կատարելու համար։ Իրականացված միջոցառումների շնորհիվ նկատելիորեն պակասել է պահեստային օդանավակայաններում կատարվող հարկադրական վայրէջքների թիվը, բարձրացել է թռիչքների անվտանգությունը և բարելավվել կանոնավորությունը, բարենպաստ պայմաններ են ստեղծվել վառելիքի տնտեսման աշխատանքները կատարելագործելու համար։ Նոր պայմաններում թռչող անձնակազմերի պատրաստման արդյունավետությունն ապահովվում է մեր վարչությունում ստեղծված թռիչքամեթոդական կենտրոնի ակտիվ գործունեության շնորհիվ, որը հագեցված է ամենաարդիական սարքավորումներով։ Վարչության ծառայություններում ավիացիոն տեխնիկայի սպասարկման նոր մեթոդների կիրառման, շահագործման նկատմամբ վերահսկողության եղանակների կատարելագործման, ինժեներատեխնիկական անձնակազմի գիտելիքների հարստացման և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման շնորհիվ էապես բարձրացել է տեխնիկայի հուսալիությունը, բարելավվել թռիչքների կանոնավորությունը։

Մեքենայական պարկերը սարքին վիճակում պահելու գործում մեծ նշանակություն ունեն Կույբիշևի ավիացիոն գործարանի հետ մեր համագործակցությունն ու գործնական կապերը։ Անհրաժեշտության դեպքում մեր շահագործողները տեխնիկական հարցերի շուրջը գործարանից օպերատիվ կոնսուլտացիաներ և հանձնարարականներ են ստանում, ձեռք բերում պահանջվող պահեստամասերը։

Քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության կոլեկտիվներում մեծ ուշադրություն է նվիրվում թռիչքների անվտանգությանն ու կանոնավորությունն ապահովելու հարցերին։ Այդ նպատակով ընդլայնվում են մեր ձեռնարկությունների ավիատեխնիկական բազաների նյութատեխնիկական հնարավորությունները, մշտապես բարձրացվում են ծառայությունների գործունեության որակը և անձնակազմերի վարպետությունը, հարստացվում գիտելիքներն ու փորձը։

Թռիչքների կանոնավորության և անվտանգության ապահովման նպատակին ուղղված կոմպլեքս միջոցառումների իրականացումը էապես նպաստում է օդային միջադեպերի պատճառների վերացմանը։ Այդ ամենի շնորհիվ անցած տարի մեր վարչությունում թռիչքների կանոնավորությունը հասցվել է 81,2 տոկոսի։

Իրականացնելով կուսակցության որոշումները, վարչության ղեկավարությունը, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները եռանդուն գործունեություն են ծավալել աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման նպատակով։ Այդ խնդիրների լուծման արդյունավետ միջոց է աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակի ներդրումը, որն ավելի ու ավելի լայն տարածում է գտնում վարչությունում։ Հուսադրող են առաջին արդյունքները։ Այսպես, փոխադրումների կազմակերպման ծառայությունում այժմ միևնույն աշխատանքը 120 մարդու փոխարեն կատարում են 90-ը։ Այստեղ 33 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, բարելավվել են որակական ցուցանիշները։ Ավելացել է նաև աշխատանքի վարձատրությունը, որը, սակայն, չի գերազանցում արտադրողականության աճին։

Արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման, փոխադրական աշխատանքների ինքնարժեքի իջեցման և սպասարկման բարձր կուլտուրայի համար ծավալված մրցությունը միաձուլվում է «Օրինակելի ավիավարչություն» կոչման համար մեր բոլոր կոլեկտիվների մղած պայքարի հետ։ Այսօր այդ կոչման համար մեր վարչությունում պայքարում են ավելի քան 300 կոլեկտիվներ՝ ավիաձեռնարկություններ, թռիչքաջոկատներ, էսկադրիլիաներ, փոխադրական ավիացիայի անձնակազմեր, ավիատեխնիկական բազաների բրիգադներ։

Քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության առջև ծառացած խնդիրների կատարման գործում վճռական դեր է խաղում թռիչքային ստորաբաժանման կոլեկտիվը, որի հրամանատարն է Զ. Բույուկյանը։ Այդ ջոկատը ՏՈՒ—154 և ՏՈՒ—134 ինքնաթիռներով կատարում է փոխադրական աշխատանքների գերակշռող մասը։ Ջոկատը մշտապես կատարում է սահմանված թռիչքների պլանները, ապահովում աշխատանքի բարձր արտադրողականությունը և որակը՝ տնտեսելով հազարավոր տոննա վառելանյութ։ Ջոկատում հատկապես աչքի են ընկնում այն անձնակազմերը, որոնց հրամանատարներն են Ա. Զաքարյանը, Մ. Ազդարովը, Գ. Պապյանը։

Լավագույն աշխատանքի օրինակներ են տալիս Երևանի ավիաձեռնարկության ավիատեխնիկական բազայի տեխնիկներ Յու. Ալահվերդյանը, Ա. Պողոսյանը։ Ուղևորների սպասարկման բարձր կուլտուրայի ապահովման համար շատ ջանքեր են գործադրում փոխադրումների կազմակերպման ծառայության դիսպետչեր Մ. Գրիգորյանը, հերթապահ հաշվարկիչ Օ. Խաչատրյանը, ուղեկցորդների բրիգադավար Ա. Հովհաննիսյանը և ուրիշներ։

Կոլեկտիվների շատ անդամներ արժանացել են ՍՍՀՄ բարձրագույն պարգևների։ Աշխատանքում իրենց հիանալի են դրսևորում սոցիալիստական աշխատանքի հերոս Է. Բախշինյանը, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր, ՏՈՒ—154 ինքնաթիռի հրամանատար Ա. Գևորգյանը։ ՏՈՒ—154 ինքնաթիռի ուղեկցորդուհի Դ. Ղազարյանը, ավագ էլեկտրատեխնիկ Տ. Նահապետյանը պարգևատրվել են Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Կառավարական պարգևների են արժանացել նաև կոլեկտիվի շատ այլ անդամներ։

Անհնար է թվարկել այն բոլոր ընկերների անունները, որոնք իրենց ազնիվ, նվիրված աշխատանքով ապահովում են ամբողջ վարչության հաջող գործունեությունը։ Ավիաաշխատողների մասսայական աշխատանքային էնտու-

զիազմը «Օրինակելի ավիավարչություն» կոչման համար ամբողջ կոլեկտիվի հաջող պայքարի երաշխիքն է։

Հայաստանում քաղաքացիական ավիացիայի հետագա զարգացումն անհնար է առանց ավիացիոն տեխնիկայի և թռիչքների կառավարման ասպարեզում նորագույն նվաճումների ներդրման խոշոր միջոցառումների։ Առաջիկա տարիներին մեր օդանավակայաններում կընդունվի 350 տեղանոց ԻԼ—86-ը, ինչպես նաև ՅԱԿ—42-ը։ Այդ արդիական, հարմարավետ ինքնաթիռները լայն հնարավորություններ են ընձեռում բարձրացնելու ուղևորների սպասարկման կուլտուրան, թռիչքների անվտանգությունն ու կանոնավորությունը։

Թռիչքների կառավարման կատարելագործման ասպարեզում խոշոր իրադարձություն է «Ստարտ» ավտոմատացված համակարգի ներդրումը։ Ներկայումս մոնտաժվում են «Ստարտի» սարքավորումները, կադրեր են պատրաստվում օդային հաղորդակցության այդ նորագույն համակարգի շահագործման համար։ Ավտոմատիկան լայնորեն մուտք է գործում օդային հաղորդակցությունների կենտրոնական գործակալություն՝ նկատելիորեն բարձրացնելով ուղևորների սպասարկման կուլտուրան։

Կենտրոնական գործակալությունում տեղադրված ԱՍԻՍՍ—007 ավտոմատ տեղեկատու համակարգը ստեղծել են ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտի գիտնականները։ Այն ստույգ և օպերատիվ տեղեկություններ է տալիս տեղեկատու-ինֆորմացիոն և արտադրական-դիսպետչերական ծառայություններին։ Համակարգի ներդրման առաջին փուլն ընդգրկում է գործակալությունը, «Զվարթնոց» և «Էրեբունի» օդանավակայանները։ Առաջիկայում այն տեղեկություններ կհաղորդի ինքնաթիռների ազատ տեղերի վերաբերյալ, կնշի տոմսարկղների հասցեները, ուղևորներին կծանոթացնի օդային փոխադրումների կանոններին և աէրոֆլոտի այլ ծառայություններին։ Համակարգի հնարավորություններն զգալիորեն ընդլայնում է ավտոմատ տեղեկատուների, այսպես կոչված, դիսպլեյների ներդրումը, որոնք ինֆորմացիա կտան ընդհուպ մինչև ուղեգծում գտնվող ինքնաթիռների տվյալների վերաբերյալ։

Քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության աշխատավորական կոլեկտիվների, հերթափոխների, բրիգադների և անձնակազմերի ջանքերն այժմ նպատակամղված են ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի պլենումների, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջադրած խնդիրների կենսագործմանը։ Հանրապետության ավիատորների գործունեությունն այսօր բնորոշվում է աշխատանքի ինտենսիվացման, գիտատեխնիկական նվաճումների ներդրման, տեխնիկայի ռացիոնալ օգտագործման, թռիչքների անվտանգության և կանոնավորության ապահովման, ուղևորների սպասարկման կուլտուրայի բարձրացման նպատակով կատարվող ակտիվ աշխատանքով։

«Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ խնդիր է դրվում ամրապնդել պետական պլանային ու աշխատանքային կարգապահությունը, մշտապես ուշադրության կենտրոնում պահել էկոնոմիկայի ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության և որակի բարձրացման հարցերը։ Կուսակցության այդ պահանջները լիովին վերաբերում են նաև մեզ, և Հայաստանի ավիատորները բոլոր ջանքերը կգործադրեն դրանք անթերի իրականացնելու համար։

---

# ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ՕՊՏԻՄԱԼ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՈՐՈՇՄԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԸ

Գ. ԲԵԼԼՈՒՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ու բնակչության պահանջմունքները առաջադրում են մշտապես բարձրացնել թողարկվող արդյունաբերական արտադրանքի որակը։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն առաջնային նշանակություն են տալիս երկրի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրանքի որակի բարձրացման պրոբլեմի լուծմանը։ Այդ հարցը սրությամբ է դրված ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների որոշումներում։ Ելնելով ՍՄԿԿ տնտեսական ստրատեգիայից՝ կուսակցությունը խնդիր է դնում հաստատակամորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը և բարելավել աշխատանքի ու սպասարկումների որակը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում՝ նրա համակողմանի ինտենսիվացման հիման վրա։ Այդ կարևոր առաջադրանքն իրականացնելու համար անհրաժեշտ է տնտեսության բոլոր ճյուղերում զգալիորեն բարձրացնել թողարկվող արտադրանքի բոլոր տեսակների որակը, ժողովրդական տնտեսության զարգացման ու գիտատեխնիկական առաջընթացի արդի պահանջներին, ինչպես նաև բնակչության աճող պահանջմունքներին համապատասխան ընդլայնել և նորացնել ապրանքների տեսականին, անշեղորեն ավելացնել որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշիռը դրա թողարկման ընդհանուր ծավալի մեջ, ամենուրեք արմատավորել արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգեր։

Արտադրանքի որակի բարելավումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական ուղղություններից է։ Վերջինս ենթադրում է արտադրանքի որակի բարելավմանը մոտենալ օպտիմալացման տեսանկյունից, այսինքն՝ տնտեսության զարգացման յուրաքանչյուր կոնկրետ ժամանակաշրջանի համար սահմանել թողարկվող արտադրանքի որակի օպտիմալ մակարդակ։

Մեր երկրում, ինչպես և արտասահմանում հետազոտություններ են կատարվում որակի օպտիմալ մակարդակի որոշման նպատակով, սակայն բավարար արդյունքի հասել են միայն որոշակի արտադրատեսակների տեխնիկական առանձին պարամետրերի գծով։ Այսպես, օրինակ, համարյա բոլոր երկրներում ընդհանուր օգտագործման էլեկտրալամպերի գործածման ժամկետն ընդունված է համարել 1.000 ժամ։ Տնտեսագիտական գրականության մեջ գոյություն ունեն նաև այլ կոնկրետ օրինակներ, որոնք վերաբերում են տարբեր արտադրատեսակների որակի օպտիմալ մակարդակների որոշմանը։ Բայց որակի այդպիսի մակարդակի սահմանումը կարող է լինել իրական միմիայն կոնկրետ ժամանակաշրջանների համար, որովհետև գիտատեխնիկական առաջընթացի և ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքների աճի զուգընթաց փոփոխվում է նաև տվյալ ժամանակաշրջանի համար սահմանված

արտադրանքի որակի մակարդակը։ Ուստի արտադրանքի որակի օպտիմալ մա-
կարդակի որոշումն անհրաժեշտ է դիտել անընդհատ զարգացման մեջ՝ կապված
գիտատեխնիկական առաջընթացի արդյունքներն արտադրության մեջ սիստե-
մատիկաբար ներդնելու հետ։

Մշակելով և ներդնելով նոր տեխնոլոգիական պրոցեսներ, սարքավորում-
ներ, ինչպես նաև արտադրության կազմակերպման նոր մեթոդներ՝ ձեռնարկու-
թյունները հնարավորություն են ստանում որոշակի չափերով կրճատելու ար-
տադրանքի որակի բարելավման համար նախատեսված ծախսերը։ Նման պայ-
մաններում ձեռնարկությունները կարող են ավելի բարձրորակ արտադրանքներ
թողարկել՝ չմեծացնելով ծախսումները։ Որակի այդ մակարդակը հենց այն մա-
կարդակն է, որը շահավետ է ինչպես արտադրողի ու սպառողի, այնպես էլ ողջ
ժողովրդական տնտեսության համար։ Հետևաբար, կարելի է ասել, որ արտա-
դրանքի որակի այն մակարդակը, որը բավարարում է վերևում շարադրված
պահանջը, ըստ էության, հանդիսանում է օպտիմալ։

Որակի մակարդակի փոփոխումը ինչպես դրանից ավելի բարձր, այնպես
էլ ավելի ցածր՝ տնտեսապես շահավետ չէ ոչ միայն ամբողջ ժողովրդական
տնտեսության, այլև առանձին արտադրողների ու սպառողների համար։ Դա
պայմանավորված է նախ նրանով, որ երբ արտադրանքի որակն ունի պահանջ-
վածից ավելի բարձր մակարդակ, այն արտադրության մեջ չի կիրառվում, որով-
հետև դրա համար դեռ չեն ստեղծվել անհրաժեշտ տեխնիկական, տնտեսական
ու կազմակերպչական պայմաններ, որոնց առկայությունը կնպաստեր ավելի
բարձրորակ արտադրանքների արդյունավետ օգտագործմանը։ Մյուս կողմից,
ցածրորակ արտադրանքի օգտագործման հետևանքով ավելանում են կորուստ-
ներն ու խոտանված ապրանքները, ինչպես առանձին ձեռնարկությունների,
այնպես էլ ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով։ Հետևաբար, որա-
կի օպտիմալ մակարդակից ամեն մի շեղում հանգեցնում է նրան, որ տվյալ
արտադրանքի մշակումն ու մասսայական արտադրության հանձնելը տնտեսա-
պես նախօրոք չի հիմնավորվում, դրա պատճառով արտադրական պրակտիկա-
յում այդպիսի արտադրատեսակները չեն գտնում իրենց կոնկրետ կիրառումը։

Տնտեսագիտական գրականության մեջ գոյություն ունեն արտադրանքի որա-
կի մակարդակի մի շարք բնորոշումներ։ Սակայն, ըստ մեզ, այդ հարցը դեռ
լիովին չի պարզաբանվել, և նրա լուծումն ունի կարևոր ժողովրդատնտեսական
նշանակություն։ Հարցի հետագա ուսումնասիրման նպատակով անդրադառնանք
մի քանի հեղինակների կարծիքներին։ Դ. Ս. Լվովը, օրինակ, օպտիմալ է հա-
մարում որակի այնպիսի մակարդակը, որն ապահովում է տվյալ արտադրան-
քի թողարկման և սպառման ժամանակ առավելագույն ժողովրդատնտեսական
արդյունք։

Ըստ Ա. Պ. Վավիլովի, օպտիմալ է այն մակարդակը, որն արտադրանքի
թողարկման ու սպառման հասարակական աշխատանքի նվազագույն ծախսում-
ների դեպքում ապահովում է պահանջմունքների առավելագույն բավարարումը։

Բացի բերված սահմանումներից, կան նաև այլ բնույթի բնորոշումներ,
որոնք վերաբերվում են ոչ թե կոնկրետ առանձին արտադրատեսակների, այլ
տարբեր արտադրանքների պարամետրային շարքերին։ Դրանք պարզաբանվել
են ստանդարտացման գիտահետազոտական համամիութենական ինստիտուտի
թողարկած մի շարք մեթոդական հրահանգներում, որոնց հեղինակներն օպ-
տիմալ պարամետրային շարք են համարում արտադրատեսակների պարամետ-
րերի համակցության այնպիսի որակական արժեքների որոշումը, որոնք կբա-
վարարեն տվյալ արտադրանքի նկատմամբ ունեցած պահանջմունքները՝ նվա-
զագույն ծախսումներով։

Ինչպես երևում է, այդ բնորոշումներն իրարից շատ քիչ են տարբերվում,
որը և վկայում է, թե այս պրոբլեմը քիչ է հետազոտված։ Բոլոր սահմանում-
ները հիմնականում հանգում են նվազագույն ծախսումների գնով արտադրան-
քի որակի բարձր մակարդակի կամ պահանջմունքների առավելագույն բավա-
րարմանը։

Ըստ մեզ, արտադրանքի որակի օպտիմալ մակարդակի որոշման համար,



բացի նվազագույն ծախսերից, անհրաժեշտ է հաշվի առնել նաև սոցիալ-տնտե-
սական մի շարք այլ առանձնահատկություններ, որոնք հանգում են ժողովրդա-
կան տնտեսության, հասարակության և արտահանման պահանջների ու պա-
հանջմունքների, որակի անհրաժեշտ մակարդակի արտադրանքի արտադրա-
կան հնարավորության, ժողովրդատնտեսական նվազագույն ծախսերի, տարե-
կան ժողովրդատնտեսական առավելագույն արդյունքի և, վերջապես, արտա-
քին շուկայում արտադրանքի մրցունակության հաշվառմանը։ Արտադրանքի
որակի օպտիմալ մակարդակի սահմանման, ապահովման ու պահպանման հա-
մար, նախ և առաջ, անհրաժեշտ է ելնել ժողովրդական տնտեսության, բնակ-
չության ու արտահանման պահանջմունքների մակարդակից։

Այն հիմնական պայմանը, որը որոշում է արտադրանքի որակի մակարդակի
նպատակահարմարությունը, դա սպառողական հատկանիշների համապատաս-
խանությունն է կոնկրետ պահանջմունքներին, իսկ կոնկրետ պահանջմունքը
աշխատանքի արդյունքի սպառողական արժեքի ճանաչման պայմանն է։ Ուստի
պահանջմունքների ի հայտ բերելը արտադրանքի արտադրման հիմքն է։

Անհրժեշտ է տարբերել երկու ձևի պահանջմունքներ. արտադրական, որի
նպատակն է բավարարել ժողովրդական տնտեսության պահանջմունքները, կամ
էլ արտադրող ու սպառող ձեռնարկությունների պահանջմունքները՝ արտադրու-
թյան միջոցներով և անձնական, որը կոչված է բավարարել բնակչության պա-
հանջմունքները բարձրորակ սպառման արտադրանքներով։

Արտադրական պահանջմունքների ձևավորման վրա, որոնք նպաստում են
արտադրանքի որակի բարելավմանը և դրա անհրաժեշտ մակարդակի որոշմա-
նը, ազդում են տարբեր բնույթի մի շարք գործոններ՝ բնական ու աշխատան-
քային ռեսուրսները, գիտության ու տեխնիկայի զարգացումը, տեխնոլոգիայի
կատարելագործումը, ձեռնարկության հզորությունը, արտադրության ծավալն
ու կառուցվածքը և այլն։ Անձնական պահանջմունքների ձևավորման վրա ներ-
գործում են բնակչության թվաքանակը, սեռը, տարիքը, զբաղմունքը, առողջա-
կան վիճակը, ազգային առանձնահատկությունները, գնողունակությունը և
այլն։

Արտադրանքի որակի բարելավման համար անհրաժեշտ պահանջմունքի
ծավալը որոշվում է հաշվեկշռային մեթոդներով ու օպտիմալացման հաշվարկ-
ներով՝ կապված ժողովրդատնտեսական պլանի կազմման, առանձնապես ար-
տադրանքի որակի բարձրացման պլանի հետ։

Արտադրանքի որակի բարելավման նկատմամբ պահանջմունքների պլա-
նավորումը հիրավի, բարդ խնդիր է, որովհետև պլանը կազմելիս պետք է ի
հայտ բերել ոչ միայն տարբեր պահանջմունքների մակարդակը և առանձնա-
հատկությունները՝ ելնելով արտադրության վիճակի վերլուծությունից և սո-
ցիալ-տնտեսական պրոցեսներից, այլև որոշել դրանց զարգացումը ժամանակի
ու տարածության փոփոխության մեջ։ Ուստի ինչպես առանձին ձեռնարկու-
թյունների, այնպես էլ ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով առան-
ձին արտադրատեսակների նկատմամբ պահանջմունքների որոշման նպատա-
կով կարևոր նշանակություն ունի տվյալ արտադրանքի համար գիտականորեն
հիմնավորված տեսակարար ծախսումների նորմաների ճիշտ հաշվառումը։
Առաջին հերթին հաշվի են առնվում հումքի, վառելիքի, էներգիայի, նյութերի,
ինչպես նաև մեքենաների ու մեխանիզմների ծախսման նորմաները, ապա՝ ար-
տադրության միջոցների պահեստավորման անհրաժեշտ քանակը։ Հետևաբար,
այս կամ այն արտադրանքի նկատմամբ անհրաժեշտ պահանջի որոշումը ար-
տադրանքի որակի բարձրացման ու կառավարման կարևոր փուլերից է։

Որակի օպտիմալ մակարդակի սահմանման համար ժողովրդական տնտե-
սության, բնակչության ու արտահանման պահանջների հաշվառումն անհրա-
ժեշտ է, քանի որ սպառման արտադրատեսակների որակը հաճախ չի համապա-
տասխանում հասարակության պահանջներին։ Որակի բարելավումը պետք
է բխի հասարակության օբյեկտիվ պահանջներից, որոնք ներկայացվում
են արտադրության միջոցների, սպառման առարկաների, օգտագործվող հիմ-
նական նյութերի որակի նկատմամբ։

է, որ մեծացնելով բարձրորակ արտադրանքի իրացումից ստացած ժողովրդատնտեսական արդյունքը, ավելի մեծ հնարավորություններ են ստեղծվում ավելի շատ միջոցներ հատկացնելու արտադրանքի որակի հետագա բարելավմանը, որն էլ իր հերթին պայմաններ է ստեղծում բավարարելու ժողովրդական տնտեսության, բնակչության ու արտահանման ավելի մեծ ու նոր ներկայացվող պահանջմունքները։

Հետևաբար, որակի կառավարման մաթեմատիկական-տնտեսագիտական մոդելում նպատակային ֆունկցիա է արտադրանքի որակի բարձր կարգի իրացումից ստացված արդյունքի ու դրա արտադրման վրա կատարված ծախսերի տարբերությունը, այսինքն՝ շահույթը։ Տվյալ խնդրի տնտեսական էությունն այն է, որ նրա լուծումը կնպաստի հասարակական արտադրության շահավետության բարձրացմանը։

Բարձրորակ արտադրանքի թողարկման ու դրա օպտիմալ մակարդակի սահմանման մյուս սոցիալ-տնտեսական առանձնահատկությունն այն է, որ տվյալ արտադրանքը պետք է մրցունակ լինի արտաքին շուկայում, որն ունի կարևոր քաղաքական ու տնտեսական նշանակություն։

Այսպիսով, արտադրանքի որակի համար օպտիմալը արտադրության այն մակարդակն է, որն իրականացվում է արտադրման ու սպառման նվազագույն ծախսերով, հաշվի առնելով արտադրողների հնարավորությունը, արտաքին շուկան ու ապահովում է ժողովրդական տնտեսության, բնակչության և արտահանման պահանջմունքների առավելագույն բավարարումը։

Տվյալ բնորոշումն ավելի ընդհանուր է և ավելի է համապատասխանում որակի նկատմամբ ժամանակի ունեցած պահանջներին։ Այստեղ արտացոլվել են այնպիսի գործոններ, ինչպիսիք են «արտադրական հնարավորությունները» և «արտաքին շուկան», որոնց անտեսումը, մեր կարծիքով, չի տալիս արտադրանքի որակի օպտիմալ մակարդակի լիարժեք բնորոշումը։

Արդյունաբերական արտադրանքի որակի մակարդակի ճիշտ սահմանումը հնարավորություն կընձեռի ապահովելու դրանով պայմանավորված մի շարք կարևոր միջոցառումների իրականացումը։ Դրանց թվին կարելի է դասել արտադրանքի որակի կառավարման նկատմամբ միասնական տնտեսական ու տեխնիկական քաղաքականության իրականացումը՝ ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով, ժողովրդական տնտեսության տարբեր մակարդակներում արտադրանքի որակն արտացոլող չափանիշների մշակումը և կիրառումը որակի կառավարման մաթեմատիկական-տնտեսագիտական մոդելներում՝ տարբեր ձեռնարկություններում օպտիմալ որակի արտադրանքի թողարկմամբ ու սպառմամբ տվյալ ձեռնարկությունների տնտեսական արդյունքի հասցնելը առավելագույն մեծության՝ նվազագույն ծախսումների պայմաններում։

Այսպիսով, նշված միջոցառումների իրականացումը և արտադրանքի որակի օպտիմալ մակարդակի սահմանումը կնպաստեն գիտականորեն հիմնավորված կազմելու արտադրանքի որակի բարձրացման ընթացիկ ու հեռանկարային պլանները, որոնց կատարումն ու գերակատարումը կապահովեն ինչպես առանձին ձեռնարկությունների, միավորումների ու ճյուղերի, այնպես էլ հանրապետության արտադրության արդյունավետության բարձրացումը։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Ս. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ**

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առաջնահերթ խնդիր համարեց ժողովրդական տնտեսության ինտենսիվ ու արդյունավետ զարգացման հիման վրա սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարումը։ Այդ խնդրի լուծման համար կարևոր նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների ձեռնարկած միջոցառումները։ Այդ փաստաթղթերում առանձնահատուկ կերպով շեշտվեցին արտադրության ինտենսիվ զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, գաղափարադաստիարակչական աշխատանքի ուժեղացման, ինչպես նաև կարգապահության ամրապնդման հարցերը։

Աշխատանքային կարգապահության ամրապնդումն արդի պայմաններում առաջնակարգ նշանակություն ունի։ Աշխատանքի արդյունավետության, դրա արտադրողականության բարձրացման խնդիրների հաջող լուծումը մեծապես պայմանավորված է բոլոր մակարդակներում աշխատողների կատարողական կարգապահությամբ։ Ամեն մի անկազմակերպվածություն հասարակությանը ոչ միայն նյութական, այլև բարոյական լուրջ վնաս է հասցնում։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումը շեշտեց, որ հարկավոր է ավելի վճռական պայքար մղել կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամեն տեսակ խախտումների դեմ։ Այս հարցերը սրությամբ քննարկվեցին նաև Կենտկոմի հետագա պլենումներում։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Կ. Ու. Չեռնենկոն Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում նշեց, որ «հիրավի համաժողովրդական հավանության արժանացան աշխատանքային, արտադրական, պլանային, պետական կարգապահության բարձրացման, սոցիալիստական օրինականության ամրապնդման նպատակներով կուսակցության ձեռնարկած միջոցառումները»։

Կարգապահությունը մարդկային գործունեության բոլոր ասպարեզներում երևան է գալիս որպես կարևոր անհրաժեշտություն։ Նյութական արտադրության ոլորտում կարգապահությունը նույնիսկ կարելի է դասել տնտեսական օրենքների շարքը, որովհետև այն նույնպես արտահայտում է տվյալ արտադրաեղանակին համապատասխանող տնտեսական պրոցեսների էական տարրերը, պատճառական կապերն ու նախադրյալները։ Արտադրությունը հար կրկնվող փոխկապակցված պրոցես է։ Այստեղ գործող հաստատուն կարգի խախտումը բացասաբար է ազդում ողջ շղթայի, արտադրության զարգացման ռիթմի վրա։ Առանց կանոնավոր նյութատեխնիկական մատակարարման, հիմնավորված պլանավորման, ինչպես նաև ներքին տեխնոլոգիական ու աշխատանքային ռեժիմի ճշգրիտ և խստիվ պահպանման անհնար է ապահովել արտադրության ռիթմիկ ու արդյունավետ զարգացումը, աշխատանքի արտադրողականության անշեղ աճը։ Ուստի արտադրության վերընթաց զարգացման համար բարձր կարգապահությունը անհրաժեշտություն է։

Կարգապահությունը տարբեր սոցիալ-տնտեսական ֆորմացիաներում ունի տարբեր բնույթ: Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, եթե աշխատանքի ֆեոդալական կազմակերպումը պահվում էր մահակի կարգապահությամբ, իսկ կապիտալիստականը՝ սովի ներգործությամբ, ապա «Հանրային աշխատանքի կոմունիստական կազմակերպումը, դեպի որը տանող առաջին քայլը սոցիալիզմն է, հենվում է և հետզհետե կշարունակի ավելի հենվել թե՛ կալվածատերերի և թե կապիտալիստների լուծը տապալած իրենց իսկ՝ աշխատավորների ազատ և գիտակցական կարգապահության վրա» (ԵԼԺ, հ. 39, էջ 16):

Սոցիալիստական հասարակությունում գիտակցական կարգապահությունը պայմանավորված է հասարակության քաղաքական ու սոցիալ-տնտեսական կառուցվածքում տեղի ունեցող արմատական փոփոխություններով: Արտադրամիջոցների կապիտալիստական սեփականության վերացմամբ և սոցիալիստական սեփականության հաստատմամբ արտադրապրոցեսում գոյավորվում և զարգանում են մարդկանց նոր հարաբերություններ, որոնք ունեն ոչ թե շահագործողական, այլ փոխօգնության ու ընկերական բնույթ, որը և աշխատավորների ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության դրսևորման, ինչպես նաև աշխատանքային գիտակցական կարգապահության գոյավորման ու ամրապնդման հզոր միջոց է:

Աշխատանքում գիտակցական կարգապահությունը դրսևորվում է այնպես, որ անձը պարտքի բարձր զգացումով է ենթարկվում հասարակության սահմանած կարգ ու կանոնին և բարեխղճորեն կատարում նախատեսված առաջադրանքները, գիտակցում այդ ամենի հասարակական նշանակությունը: Բարեխիղճ և արդյունավետ աշխատանքում է դրսևորվում անհատի գիտակցական կարգապահությունը:

Գիտակցված կարգապահության համար կարևոր նախադրյալներ են նաև մարդու բարձր գաղափարական ու կուլտուրական մակարդակը, նրա խոր համոզմունքն ու ակտիվ դիրքորոշումը, որոնք տվյալ կոլեկտիվի, հետևապես նաև հասարակության առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու գրավականն են:

Սոցիալիզմի պայմաններում բարձր գիտակցական կարգապահությունը դառնում է մարդու վարքագծի կայուն հատկանիշը: Հանրահայտ է, որ մարդու բնավորությունն սկսվում է կերպավորվել մանուկ տարիքում՝ ընտանիքում: Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի նյութերում, ողջ խնդիրը ինչպես ընտանիքում, այնպես էլ դպրոցում և աշխատանքային կոլեկտիվում բազմակողմանի զարգացած, կոմունիստական հասարակությանը մինչև վերջ նվիրված մարդու դաստիարակումն ու կերպավորումն է, որի բնավորության բնորոշ գծերը կազմեն ազնվությունը, աշխատասիրությունը, գիտակցական կարգապահությունը, հայրենասիրությունը, վերջին հաշվով՝ սոցիալիստական քաղաքակրթվածությունը:

Գիտակցական կարգապահության անհրաժեշտության զգացումը մարդու կողմից և այն նրա բնավորության հատկանիշ դարձնելը բարդ ու տևական պրոցես է: Այն, որպես կենսական անհրաժեշտություն, մարդկանց մոտ կաղապարվում է աստիճանաբար՝ սոցիալիստական շինարարության ընթացքում:

Բարձր գիտակցական կարգապահության պայմաններում աշխատողն ավելի շատ հնարավորություն ունի հաջողությամբ պլանավորելու իր գործունեությունը, նախատեսելու ընթացիկ ու հեռանկարային խնդիրները, վերահսկելու ու գնահատելու իր և այլոց վարքագիծն ու գործերը: Վ. Ի. Լենինը նշել է, որ սոցիալիզմի պայմաններում «...գիտակից բանվորները թույլ չեն տա խախտելու պրոլետարական խստագույն կարգապահությունը և խստագույն դատապարտմամբ կվերաբերվեն նրանց, ովքեր իրենց զանցանքներով արատավորում են սովետական իշխանությունը» (ԵԼԺ, հ. 50, էջ 127):

Կարգապահությունը գիտակցական դարձնելու առաջին կարևոր նախապայմանը վերջինիս էության ու նպատակի խոր ըմբռնումն է ժողովրդական հոծ մասսաների միջավայրում: Ա. Ս. Մակարենկոն այդ առիթով նշել է. «Մեր կարգապահությունը, ի տարբերություն հին կարգապահության, որպես քա-



ղաքական ու բարոյական երևույթ, պետք է շաղկապվի գիտակցության հետ, այսինքն՝ լրիվ հասկացվի, թե ինչ է նշանակում կարգապահություն և ինչի համար է այն հարկավոր» (А. С. Макаренко, Воспоминание гражданина. М., 1968 г., стр. 266):

Մեր երկրում յուրաքանչյուր մեկ րոպեում արտադրվում է ավելի քան 2,4 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, ձուլվում համարյա 300 տոննա պողպատ, արդյունահանվում է ավելի քան հազար տոննա նավթ, ավելի քան 770 հազար խմ բնական գազ, 1,4 հազար տոննա ածուխ: Ընդ որում աշխատաժամանակի մեկ րոպեի կորուստը ողջ երկրի մասշտաբով հավասար է մոտ 200 հազար բանվորների օրական աշխատանքի կորստին: Կամ, օրինակ, մեր հանրապետությունում, եթե նյութական արտադրության ոլորտում աշխատողները տարվա ընթացքում ընդամենը մեկ օր բացակայեն աշխատանքից, ապա դա հավասարազոր է այն բանին, որ հանրապետության տարվա ազգային եկամուտը պակասի ավելի քան 20 մլն ռուբլով:

Արդի պայմաններում կուսակցությունը լուրջ ուշադրություն է հատկացնում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ու օղակներում կարգապահության ամրապնդման հարցերին: Այդ տեսակետից կարևոր նշանակություն ունեցավ 1980 թ. հունվարի 12-ին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի ընդունած «Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման և կադրերի հոսունության կրճատման մասին» որոշումը, որում նշվում է, որ արտադրության մասշտաբների մեծացման, տնտեսական կապերի բարդացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման շնորհիվ, բարձրանում է աշխատանքային ժամանակի յուրաքանչյուր րոպեի նշանակությունը, ուստի անհրաժեշտ է դառնում խստագույն կերպով ներքին կարգ ու կանոն պահպանելը, որպեսզի աշխատանքային և նյութական կորուստներ չլինեն: Սակայն պրակտիկայում կարգապահության խախտման փաստերին ոչ բոլոր դեպքերում է տրվում սկզբունքային կուսակցական գնահատական: Որոշման մեջ խնդիր դրվեց շեշտակի բարձրացնել հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների պատասխանատվությունը, աշխատանքային կոլեկտիվների կուսակցական և հասարակական կազմակերպությունների դերը կարգապահության ամրապնդման գործում: Ձեռնարկությունների սոցմրցության արդյունքների գնահատման ժամանակ արտադրացուցանիշների շարքում դասվեց նաև կարգապահության ցուցանիշը:

Աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցը հատկապես շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և հաջորդ պլենումներում: Խնդիրն այն է, որ ամենուրեք հաստատվի այնպիսի կարգ, որպեսզի չկորչեն աշխատանքային րոպեները, լինի աշխատանքային, պլանային, պետական պատշաճ կարգապահություն, առանց որի անհնար է բարձրացնել աշխատանքի արդյունավետությունը: Դրա համար շատ կարևոր է, որ արտադրության պրոցեսում աշխատողները գիտակցեն սահմանված կարգուկանոնին խստիվ ենթարկվելու, արտադրական առաջադրանքները բարեխղճորեն ու անթերի կատարելու անհրաժեշտությունը, զգան ու գնահատեն այդ ամենի կարևոր նշանակությունը ողջ հասարակության համար:

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի «Աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման բնագավառում տարվող աշխատանքի ուժեղացման վերաբերյալ» և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ու ՀԱՄԿԽ-ի «Աշխատանքային կարգապահության ամրապնդման լրացուցիչ միջոցառումների մասին» 1983 թ. օգոստոսին ընդունած որոշումներում, մեծ նշանակություն տալով սոցիալիստական կարգապահության՝ որպես տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների հաջող կատարման նախադրյալի, համակողմանի ամրապնդմանը, միևնույն ժամանակ կոնկրետ միջոցառումներ են նշվում առավել ամրապնդելու աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, բարելավելու պլանների հաշվեկշռվածությունը, նյութատեխնիկական մատակարարումը, նվազեցնելու կադրերի հոսունությունը և այլն:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի նշված որոշմամբ պարտավո-

բեցված է արտադրական ձեռնարկությունների, միավորումների, սովխոզների ու կոլտնտեսությունների, կազմակերպությունների ղեկավարներին՝ պրակտիկայում լայն մասշտաբով կիրառել արտադրության առաջավորների ու նորարարների, ինչպես նաև արտադրությունում երկար ժամանակ աշխատողների համար սահմանված նոր արտոնություններն ու առավելությունները։ Դրա հետ միաժամանակ նախատեսվում է ուժեղացնել վարչական և այլ կարգի ներգործությունը կարգապահությունը խախտողների նկատմամբ։

Արդի պայմաններում աշխատանքային կարգապահության բարձրացման գործում առավել կարևոր է դառնում աշխատանքային կոլեկտիվի դաստիարակչական դերը։ Աշխատանքային կոլեկտիվների մասին օրենքում նշված է նաև, որ նրանք կարող են հարց բարձրացնել կարգապահությունը խախտողների պատճառած նյութական վնասը նրանց կողմից հատուցելու համար։ Իսկ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի որոշմամբ կոնկրետացված է այդ վնասների հատուցման կարգը։ Օրենքը նախատեսում է բարձրացնել աշխատանքային կոլեկտիվների դերը ձեռնարկություններում, հիմնարկություններում ու կազմակերպություններում ղեկավար կադրերի ընտրության գործում։ Նրանց պաշտոնի նշանակումն ու ազատումն արդեն իրականացվում են՝ հաշվի առնելով կոլեկտիվի կարծիքը։ Դա շատ կարևոր և ժամանակին է այն առումով, որ դրանով հնարավոր է դառնում առաջ քաշելու առավել գործունյա, եռանդուն, ազնիվ աշխատողների, իսկ մյուս կողմից՝ հուսալի պատնեշ ստեղծելու նրանց դեմ, որոնք չգիտեն գործը, չեն կարող աշխատել ենթակաների հետ, ցուցաբերում են մեծամտություն, կոպտություն։

«Մասսան,— նշել է Վ. Ի. Լենինը,— պետք է իրավունք ունենա ընտրելու իր պատասխանատու ղեկավարներին։ Մասսան պետք է իրավունք ունենա փոխելու նրանց, մասսան պետք է իրավունք ունենա իմանալու և ստուգելու նրանց գործունեության յուրաքանչյուր ամենափոքր քայլը» (ԵԼԺ, հ. 36, էջ 194)։ Կարևոր է այն, որ յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում ըստ արժանվույն գնահատվի յուրաքանչյուր աշխատողի՝ շարքայինից մինչև ղեկավարի, գործունեությունը, խրախուսվեն լավ աշխատողները, առաջավորների փորձը տարածվի մյուսներին օգնելու նպատակով, իսկ ղեկավարներն իրենց գործելակերպով ու վարքագծով օրինակ ծառայեն ենթակաների համար։

Անշուշտ, առաջավոր աշխատողներ շատ ու շատ են, որոնք իրենց անձնուրաց աշխատանքով բարի համբավ են վայելում։ Կարելի է նշել, օրինակ, Մեծ Վեդու Աղասի Խանջյանի անվան կոլտնտեսության աշխատանքային կոլեկտիվը, որի ճնշող մեծամասնության բարեխիղճ, նվիրված աշխատանքի շնորհիվ տնտեսությունը դարձել է առաջավոր։

Բերենք մի օրինակ ևս. «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման Երևանի էլեկտրալամպերի գործարանի ռացիոնալիզատորները, առաջավոր բանվորներն իրենց բարեխիղճ և բարձրորակ աշխատանքով աջակցում են օրըստօրե բարձրացնելու մեքենաների օգտակար գործունեության գործակիցը, ավելի խնայողաբար օգտագործելու նյութերը, կիսաֆաբրիկատներն ու աշխատավարձի ֆոնդը։ 1982 թ. 160 ռացիոնալիզատորական առաջարկություններից 102-ը ներդրվել է արտադրության մեջ, որի շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և բարելավվել կիսաֆաբրիկատների որակը։ Այդ առաջարկությունների ներդրումից ստացված տնտեսական օգուտը կազմել է ավելի քան կես միլիոն ռուբլի։ Ձեռնարկության հարյուրավոր ինժեներներ ու բանվորներ ակտիվորեն են մասնակցում ռացիոնալիզատորական շարժմանը։

Ցավոք, ոչ բոլորն են, որ ճիշտ են հասկանում ու գնահատում աշխատանքային բարձր գիտակցական կարգապահության դերն ու նշանակությունը հասարակության առաջընթացի համար։ Անբարեխիղճ, անկարգապահ աշխատողները, խախտելով աշխատանքային ռեժիմն ու կարգուկանոնը, չկատարելով իրենց առաջադրանքները, դրանով իսկ նյութական և բարոյական մեծ վնաս են հասցնում հասարակությանը։

Արդի պայմաններում, երբ աշխատանքային կարգապահության խիստ



բարձրացումը դարձել է կյանքի հրատապ պահանջ, կարևոր նշանակություն է ստանում այդ առումով նպատակաուղղված կոմպլեքս միջոցառումների կիրառումը։ Դրանց շարքում շատ կարևոր են համոզման, ինչպես և հարկադրման մեթոդները։

Համոզման և հարկադրման մեթոդները սերտ միասնության մեջ են, լրացնում են միմյանց։ Այդուհանդերձ, հարկ է ելնել լենինյան դրույթից. «Մենք պետք է, ինչպես էլ որ լինի, նախ համոզենք և ապա հարկադրենք» (ԵԼԺ, հ. 43, էջ 65)։ Այս հարցերը լուրջ քննության առարկա դարձան ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում, որը կուսակցական, հասարակական կազմակերպությունների, ինչպես նաև աշխատանքային կոլեկտիվների առջև խնդիր դրեց վերացնել մարդկանց կոմունիստական դաստիարակության ասպարեզում տեղ գտած թերությունները և անշեղորեն բարձրացնել նրա արդյունավետությունը։

Սոցիալիստական հասարակությունում հարկադրման մեթոդը բխում է հասարակության մասշտաբով կարգապահության ամրապնդման անհրաժեշտությունից՝ հանդիսանալով պետական իշխանության կիրառման ձևերից մեկը։ Հարկադրանքը գործադրվում է այն դեպքում, երբ մարդիկ խախտում են սոցիալիստական օրինականությունը, չեն ենթարկվում հասարակության շահերն ու կամքն արտահայտող պետական օրենքներին և իրենց արարքներով վնաս են հասցնում պետությանը։ Սովետական պետությունը միշտ էլ պայքարել է հակահասարակական արարքների, հանրօգուտ աշխատանքից խուսափողների դեմ։

ՍՄԿԿ XXVI համագումարում մասնավորապես ասվեց, որ «...հարկավոր է կազմակերպական, ֆինանսական, իրավաբանական բոլոր միջոցներով ամուր փակել ամեն տեսակ սողանցքերը պորտաբուծության, կաշառակերության, սպեկուլյացիայի առաջ, ոչ աշխատանքային եկամուտների, սոցիալիստական սեփականության նկատմամբ ամեն տեսակ ոտնձգությունների առաջ»։ Այսպիսով, սովետական հասարակությունում հարկադրանքի նպատակն է հասարակության գործունեության բոլոր ոլորտներում կարգապահության ամրապնդումը։

Աշխատանքային կարգապահության վրա մեծ չափով ազդում են նաև արտադրության պրոցեսում աշխատանքի կազմակերպումը, նյութատեխնիկական մատակարարումը, բարոյական և նյութական խրախուսումը, սոցիալիստական մրցությունը, կոլեկտիվում տիրող բարոյաքաղաքական մթնոլորտը, սպասարկման ոլորտի գործունեությունը և այլն։ Դրանցից յուրաքանչյուրը յուրովի է ազդում աշխատանքային կարգապահության վրա։ Այսպես, օրինակ, տրանսպորտի անկանոն աշխատանքը, կենցաղսպասարկման, բուժսպասարկման, առևտրական, նախադպրոցական հիմնարկ-ձեռնարկություններում գոյություն ունեցած ոչ բավարար վիճակը տեղիք է տալիս մյուս բնագավառների աշխատողների աշխատանքային րոպեների ու ժամերի, նույնիսկ օրերի կորուստների։ Դրանից խուսափելու համար ՍՄԿԿ Կենտկոմը և Մինիստրների խորհուրդը, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի պահանջներից, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, աշխատողների աշխատանքային ժամանակի կորուստը խիստ կրճատելու նպատակով կոնկրետ քայլերի դիմեցին բարելավելու սպասարկման ոլորտի գործունեությունը։ Հաշվի առնելով աշխատավորների շահերը, փոփոխության ենթարկվեց կենցաղսպասարկման, բուժսպասարկման, առևտրական, նախադպրոցական և այլ հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքային ժամերի գրաֆիկը։ Դրա հետ մեկտեղ խնդիր դրվեց բարձրացնելու բնակչության սպասարկման կուլտուրան ու որակը։

Արդի փուլում երկրի ժողովրդական տնտեսության վերընթաց ու արդյունավետ զարգացումը պայմանավորված է նաև բոլոր օղակներում տիրող կարգապահության վիճակով, ուստի, ելնելով դրանից, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկում հասարակության մասշտաբով ամրապնդելու սոցիալիստական կարգապահությունը։

# ԱՌԱՏԱՇԵՆԻ ԱՌԱՏՈՒԹՅՈՒՆԸ

## ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

Գյուղը կոչվում է Առատաշեն, կոլտնտեսությունը՝ «Հիմնաքար»: Բնակավայրն իր արտաքին ակնահաճո տեսքով՝ ուղղաձիգ փողոցները երիզած տուֆակերտ մենատներով ու դրանք շրջափակած, բերքուբարիքով ծանրաբեռ այգի-բանջարանոցներով, մարդկանց սպասարկման զանազան օջախ-օբյեկտներով, իրոք, առատ շենի տպավորություն է թողնում առաջին իսկ հայացքից:

Կոլտնտեսությունն էլ հիմնաքարի պես ամուր ու հզոր է: Այդ իրողության վկայությունները բազում են: Գլխավոր հաշվապահ Վերա Խաչատրյանը հիմնավորում է թվերով. «Անցյալ տարի կոլտնտեսության դրամական եկամուտը կազմեց երկուսուկես միլիոն, օգուտը՝ 780 հազար 500 ռուբլի»: Կոլտնտեսության նախագահ Ռազմիկ Մարտիրոսյանը հավաստում է. «Այս տարի և՛ եկամուտը շատ կլինի, և՛ օգուտը,— ապա ավելացնում է,— դաշտավարների ամսական միջին վաստակն անցնում է 300, անասնապահներինը՝ 400 ռուբլուց»:

Վերելքը նոր թափ առավ, երբ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի հաստատած պարենային ծրագրի առնչությամբ կուսկազմակերպությունը կանխորոշեց կոլտնտեսության անելիքները:

Ծանոթանում եմ տնտեսության աննախադեպ նվաճումներին ու նրա մարդկանց և միանգամից մտաբերում ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար Ս. Մխիթարյանի կարծիքը. «Առատաշենի կոլտնտեսությունը շրջանի առաջատար և առաջավոր տնտեսություններից է, կուսկազմակերպությունը մարտունակ է, ղեկավարները՝ բանիմաց»: Սեղմ գնահատանք է, բայց մեծ խորհուրդ ունի: Այդ խորհուրդը բացահայտեց կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը: Կուսբյուրոյի հաշվետվությունը, ըստ էության, նաև հանրագումարն էր տնտեսության վերելքի ու հաղթարշավի, նրա մարդկանց լավ գործերի, կոմունիստների հայրենանվեր աշխատանքի, կուսկազմակերպության ու կոլտնտեսության վարչության համատեղ ծավալած բեղմնավոր գործունեության արդյունքների:

## ՆՈՐԻՆ՝ ԿԱՆԱՉ ՃԱՆԱՊԱՐՀ

Կուսբյուրոյի հաշվետու զեկուցմամբ հանդես եկավ նրա քարտուղար Սարգիս Զաքարյանը: Զեկուցողը ըստ ամենայնի արծարծեց արտադրության կուսակցական ղեկավարման, կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի հարցերը, տվեց պարենային ծրագրի կատարման համար կոմունիստների, կոլտնտեսականների ծավալած պայքարի իրական պատկերը: Զեկուցման մեջ կարմիր թելի պես անցնում էր այն միտքը, որ այստեղ մարդիկ կուսակցության հաստատած պարենային ծրագրի իրականացումը համարում են անհետաձգելի և կենսական խնդիր:

Զեկուցման մեջ ու ելույթներում վկայակոչած թվերն ու փաստերը համոզիչ են: Թեև բերքահավաքը տակավին ընթացքի մեջ է, կոլտնտեսությունն արդեն ժողովի նախօրյակին (հոկտեմբերի 10-ին) պետությանը պլանից ավելի վաճառել է 1.100 տոննա բանջարեղեն, 430 տոննա խաղող, 117 տոննա պտուղ: «Երեք տարի անընդմեջ,— ասաց զեկուցողը,— տնտեսությունն իր ձեռքում է պահում կուսշրջկոմի ու



շրջսովետի գործկոմի՝ բանջարաբուծության փոխանցիկ կարմիր դրոշը»: Պլանից դուրս նաև՝ 104 տոննա կարտոֆիլ, 100 տոննա հացահատիկ, 144 տոննա բոստանային կուլտուրա— ահա տնտեսության մարդկանց այս տարվա ջանքերի արգասիքը: Առատ բերք է սպասվում նաև խորդենուց:

Հաշվետու-ընտրական ժողովը արտադրական նվաճումները բացատրեց շատ գործոններով ու, մասնավորապես, այն իրողությամբ, որ առատաշենցիները լավ գիտեն նյութական բարիքների առատության հիմնական աղբյուրի՝ հողի, հարգն ու պատիվը, հանրային արտադրության վերելքի համար գործի են դնում առկա ռեզերվները, այն, ինչ նոր ու առաջավոր է, ջերմորեն պաշտպանում և արմատավորում են: Եվ այդ խնդիրները մշտապես գտնվում են կուսկազմակերպության, նրա բյուրոյի տեսադաշտում:

Արտադրության որ բնագավառին էլ ծանոթանաս, անշուշտ, աչքի կզարնի մի ինչ-որ նորույթ, ընդօրինակման արժանի գործ: Հաշվետու-ընտրական ժողովում ճիշտ ասվեց, որ Արարատյան դաշտի պայմաններում հողի ընդարձակման հնարավորությունները սահմանափակ են, գրեթե անհնարին, և դա վերաբերում է նաև Առատաշենին: Տնտեսությունն ունի ընդամենը 383 հեկտար վարելահող: Խոշոր, տարի առ տարի թևերն աջ ու ձախ տարածող գյուղի համար, իհարկե, քիչ է: Բայց առատաշենցիները կարողացել են 160 հեկտարով ավելի շատ ցանք կատարել, քան հողատարածություն ունեն:

Ժողովի նախօրյակին այդ առթիվ նախագահի հետ ունեցած զրույցի ժամանակ նա բացատրեց. «Արմատավորել ենք հողից երկու լիարժեք բերք ստանալու պրակտիկան, առանձին հողակտորներում նույնիսկ երեք բերք ենք աճեցնում, իսկ հողի ինտենսիվ օգտագործումն անփոխարինելի ռեզերվ է»: Ահա վկայությունը: Շրջանում առաջին անգամ այստեղ 1983-ին կիրառվեց ձմերուկի ամառային ցանքը՝ վաղահաս կարտոֆիլի դաշտում: Արդյունքն սպասվածից վեր էր. մեկ հեկտարի հաշվով՝ 180—200 ցենտներ կարտոֆիլ, 200 ցենտներ ձմերուկ: Եվ մի կարևոր հանգամանք, որ հույժ ուսանելի է. գարնանացան ձմերուկի բույսերը բուժվում են շատ անգամներ, իսկ ամառայինը՝ միայն երկու: Խնայվում են մարդկային ուժը, ժամանակը, քիմիկատները: Մեկ հեկտարի դրամական եկամուտն էլ՝ 11 հազար ռուբլի, մինչդեռ մեկ ցանքի դեպքում 6.500 ռուբլուց չի անցնում: Այս առթիվ կուսշրջկոմի գյուղբաժնի վարիչ Հր. Հովսեփյանը, որ ներկա էր զրույցին, ասաց. «Ձմերուկի ամառային ցանքի Առատաշենի փորձը ուսանելի էր և արմատավորվեց շրջանի շատ տնտեսություններում: Դա նպաստեց այս տարվա պլանի կատարմանը, մինչդեռ տարիներ շարունակ այդ բնագավառը մեր խոցելի կողմն էր»:

Տնտեսությունը մշակում է 82 հեկտար պոմիդոր: Նախկինում դաշտի լայնքով, որոշակի տարածության վրա ջրատար առուներ էին հանվում: Այժմ թողնվում է միայն մեկ ջրատար՝ դաշտի վերին եզրին, և ոռոգումը կատարվում է դրա երկայնքով: Եվ ահա առավելությունը. լայնակի ջրատարների վերացմամբ խնայվում է վեց հեկտար հողատարածություն, սահմանային խոնավությունը լինում է նորմալ. կանխվում են ջրի կորուստները: Շահած հողից ստացվում է 360 տոննա պոմիդոր, որ համարժեք է 36 հազար ռուբլու:

Առաջին հայացքից աննկատելի, սակայն շատ կարևոր ռեզերվ է սոխի ցանքադաշտի թմբերին կերի ճակնդեղի աճեցումը: Մինչդեռ երեսուն հեկտարում տնտեսությունը շահում է հինգ հեկտար կամ առանց էական ծախսերի լրացուցիչ ստանում է 400 տոննա արժեքավոր կեր: Հեկտարի հաշվով 350—400 ցենտներ կեր է ամբարվում խաղողի նորաստեղծ այգիներում այդ կուլտուրան ցանելու միջոցով:

Հանրային արտադրության զարգացմանը, պարենային ծրագրի իրագործմանը վերաբերող բազմաբնույթ հարցեր ժամանակին պատշաճ ուշադրության են արժանացել, դարձել կուսժողովների ու բյուրոյի նիստերի գործարար քննարկման առարկա: Հողի արդյունավետ օգտագործման, ցանքերի մշակության, այգիների բուժման, բերքահավաքի հաջող ու անկորուստ անցկացման վերաբերյալ կուսկազմակերպությանը հաշիվ են տվել կոլտնտեսության նախագահը, մասնագետներն ու բրիգադավարները: Շատ հարցեր լուրջ խոսակցության, տաք վեճերի առիթ են տվել ու կոլեկտիվ կամքով լուծվել, նոր հաջողության հիմք ծառայել:

Կոլտնտեսության գլխավոր գյուղատնտես Ս. Հովակիմյանն իր ելույթում ասաց.

«Շատ են մեր հաջողությունները, որոնք արդյունք են նաև գիտության ու արտադրության սերտ կապի: Գիտության շատ նվաճումներ ներդրվել են արտադրության մեջ: Հերբիցիդների կիրառմամբ, օրինակ, բացառել ենք մոլախոտերի աճը սոխի, պոմիդորի, ձմերուկի ցանքադաշտերում»:

Կոլտնտեսության նախագահ Ռ. Մարտիրոսյանի ելույթը նվիրված էր արտադրության զարգացման ռեզերվների արդյունավետ օգտագործմանը: Դրա շնորհիվ, ասաց նա, հացահատիկի միջին բերքը հեկտարից կազմել է 58 ցենտներ, կերի բազայի ամրապնդմամբ հնարավոր է եղել խոտ վաճառել հարևան տնտեսություններին, տավարի մատղաշի ինտենսիվ բտման միջոցով ամեն մեկի հաշվով ստանալ շուրջ 500 ռուբլու լրացուցիչ դրամական եկամուտ, բազիսային յուղայնության բարձրացմամբ շահել 11 տոննա կաթ:

Խաղողագործության զարգացման խնդիրը տնտեսության ղեկավարների մշտական ուշադրության կիզակետում է. ողջ թմբային այգիները այստեղ վերածվել են հենասյունայինի: Ընդ որում, նորերը հիմնվում են զտասորտության սկզբունքով: «Մեր նպատակն է,— ասում է կոլտնտեսության նախագահը,— հիմնել զտասորտ, բարձր բերքատու այգիներ: Արդեն 16 հեկտարանոց «Կանգուն» տեխնիկական սորտի այգի ունենք: Այդ ձևով նորացնելու ենք 1965—1970 թվականներին հիմնած այգիները: Մեր նպատակն է ամեն մի հեկտարից 200 ցենտներից ավելի բերք ստանալ: Մի՞թե թաքնված, չօգտագործված ռեզերվ չէ»:

Արտադրության ռեզերվների օգտագործման, նորույթների արմատավորման ցանկը կարելի է շարունակել: Դրանք ամենուրեք կան: Օրինակ, սոխի աշնան ցանքի կիրառումը: Առաջին անգամ այն ցանվեց 1983-ի աշնանը, միջին բերքը հեկտարից կազմեց 515 ցենտներ, մինչդեռ գարնանային ցանքինը 250-ից չի անցնում: Բարձր բերքից բացի, ուրիշ առավելություն էլ ունի այն. սոխը հուլիսի երկրորդ կեսից մինչև օգոստոսի առաջին կեսը հավաքվում ու տեղը սիլոսացու եգիպտացորեն է ցանվում:

Եվ, վերջապես, անասնապահության բնագավառը: Կոլտնտեսության նախագահը գտնում է, որ կարելի է ամեն մի կովից տարեկան 4.000 կիլոգրամ կաթ ստանալ: Դրա համար նախադրյալներ կան. չորս կթվորներ արդեն ամեն մի կովից 3.000 կիլոգրամից ավելի կաթ են ստանում, բարձր կաթնատու կովերի մատղաշն աճեցվում է սեփական հոտի վերարտադրության նպատակով: Վերջին երեք տարում 150 գլխով համալրվել է կովերի կազմը: Ցեղաբուծական արդյունավետ աշխատանքը շարունակվում է: Արմատավորվել է տավարի մատղաշի ինտենսիվ աճեցման ու բտման նոր եղանակը, որի հեղինակն է հայկական գյուղինստիտուտի անասնապահության ամբիոնի վարիչ, պրոֆեսոր Լևոն Վարդևանյանը: Այս տարի մատղաշը պետությանը վաճառվել է 380 **կգ** կենդանի քաշով: Մինչև տարեվերջ մթերվող կենդանիների քաշը կհասնի 400-ական **կգ**-ի:

## ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ՕՐԻՆԱԿԻ ՈՒԺԸ

«Ամեն մի կուսակցական կազմակերպության մարտունակություն, նրա ազդեցության մակարդակը պայմանավորված են այն բանով, թե որքանով ճիշտ են տեղաբաշխված կոմունիստների ուժերը, ինչպես են նրանք ապահովում իրենց ավանգարդային դերը»,— ասաց կուսբյուրոյի քարտուղար Ս. Զաքարյանը հաշվետու զեկուցման մեջ և ավելացրեց, որ կազմակերպության անդամները օրինակ են ծառայում աշխատանքում, հասարակական կյանքում, կենցաղում:

Գաղտնիք չէ. տնտեսական վերելքն արտացոլող ամեն մի թիվ մարդկանց անդուլ աշխատանքի, նրանց ստեղծագործական ջանքերի, մտքի որոնումների արգասիք է: Եվ ամենուրեք վճռական դեր է խաղում կոմունիստի գործելակերպը, նրա օրինակի ուժը:

Առատաշենի կոլտնտեսության կուսկազմակերպության հաջողության գրավականներից մեկը արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի խելամիտ տեղաբաշխումն է. յոթական կոմունիստներ անմիջականորեն աշխատում են բանջարաբուծության, անասնապահության բնագավառներում և մեքենատրակտորային հավաքակայանում, ինը՝ այգեգործությունում: Քիչ չէ՝ 47-ից 30-ը արտադրության ոլորտում են:

Եվ նրանց մասին կուսբյուրոյի քարտուղարը դրվատանքի ջերմ խոսքեր չի խնա-



յում: Հատուկ նշվում են բանջարաբույծներ Գայանե Գրիգորյանի, Անուշ Պետրոսյանի, այգեգործներ Ռազմիկ Կարապետյանի, Ռուբեն Ղազարյանի, մեխանիզատորներ Սասունիկ Բադալյանի, Շավարշ Խաչատրյանի, Երեմ Նազարյանի, անասնապահ Հրայր Արևշատյանի անունները:

Հաշվետու զեկուցման մեջ պատշաճ կերպով վերլուծվում են միջին օղակի կոմունիստ ղեկավարների աշխատանքի ոճը, նրանց ղեկավարած կոլեկտիվների ավանդը ընդհանուր արդյունքում: Կոմունիստ Արծրուն Սիմոնյանը, եռանդով լեցուն մի երիտասարդ, ժողովի նախօրյակին քաջալերում էր բրիգադի մարդկանց՝ այգեկութը կատարել խնամքով, ինքն էլ հսկում, որ գործարան առաքվի բացառապես տեսակավորված գինեհումք: «Ռկածիթելի սորտը,— ասաց նա,— մեր պայմաններում լավ բերք է տալիս, ափսոս, որ 5—6 հեկտար է, այլապես ավելի առատ խաղող կստանայինք»: Եվ նա հայտնեց, որ, նախատեսված 340-ի փոխարեն, բրիգադն արդեն 540 տոննա խաղող է հավաքել, մինչդեռ բերքահավաքը չի ավարտվել:

Բանջարաբուծական № 1 բրիգադը ղեկավարում է կոմունիստ Ենոք Ղազարյանը: Հաշվետու զեկուցման մեջ նրա մասին ջերմ խոսք ասվեց: Հիմքեր կային. նախատեսված 1.210-ի փոխարեն, բրիգադը 1.700 տոննա բանջարեղեն է հավաքել: Դա կուսակցական հաշվետու-ընտրական ժողովի նախօրյակին էր, իսկ դաշտերում տակավին զգալի բերք կար: Նշանակում է՝ հեկտարի միջին բերքատվությունը 550 ցենտներից կգերազանցի: Ռազմիկ Միսակյանի ղեկավարած № 3 բրիգադն էլ պլանից ավել 270 տոննա բանջարեղեն ստանալու զեկույց էր ներկայացրել կոմունիստների ժողովին:

Ինչպես զեկուցման մեջ, այնպես էլ զրույցի ընթացքում կուսբյուրոյի քարտուղարն ըստ արժանվույն բնութագրեց կերհայթայթման բրիգադի բրիգադավար Սիմոն Հարությունյանին. բանիմաց, իր գործին նվիրված ղեկավար է, ակտիվ կոմունիստ: «Կերի կուտակման ողջ ծանրությունը այդ բրիգադի ուսերին է»,— ասաց կուսբյուրոյի քարտուղարը:

Այո՛, ամենուրեք կոմունիստները, շարքային թե ղեկավար, դրական օրինակ են ծառայում: Կոլտնտեսության նախագահ Ռ. Մարտիրոսյանը, ինչպես ասում են, հինգ մատի պես գիտի դաշտ ու այգին, մարդկանց՝ մեծից փոքր: Չորս տարի այս տնտեսության գլխավոր գյուղատնտեսն է եղել, հինգերորդ տարին է, ինչ վարում է նրա ղեկը: Կարողանում է մարդկանց տանել իր ետևից, իր օրինակով համակել նրանց: Հանգիստ չունի. մեկ ոտքը դաշտ ու այգում է, մյուսը՝ ֆերմաներում: Հանգիստը գտնում է աշխատանքում, ձեռք բերած բարձր արդյունքում: Միտքն անընդհատ որոնումների մեջ է: Նրա շատ մտահղացումներ կյանքի են կոչվել ու հսկայական օգուտ բերել տնտեսությանը, արտադրության մարդկանց:

Վաստակաշատ երկրագործ է կուսբյուրոյի քարտուղար Սարգիս Զաքարյանը: Ութ տարի գլխավորում է կուսկազմակերպությունը, կոմունիստների ու աշխատավորների շրջանում արժանի հեղինակություն վայելում: Մինչև 1983-ի կեսերը ղեկավարում էր բանջարաբուծական № 1 բրիգադը: Շուրջ երեքուկես տասնամյակ: Հողի հետ կապվել էր, երբ տասնյոթամյա պատանի էր: Տարիներ շարունակ շրջանում ճանաչվել է որպես բարձր բերքի վարպետ: Ռեկորդներ է սահմանել. հեկտարից 1.000 ցենտներ պոմիդոր, 650 ցենտներ սոխ: Վաստակի գնահատանքն էլ՝ Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանները, կառավարական ու ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի մեդալներ, պատվոգրեր, սոցմրցության հաղթողի կրծքանշաններ: Սկզբունքը՝ ճշտապահություն, անհանդուրժողական վերաբերմունք թերությունների ու թերացողների հանդեպ:

## ԱՄԵՆ ԻՆՉ՝ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի 1982-ի մայիսյան պլենումը, հաստատելով երկրի պարենային ծրագիրը, կուսկազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ հոգալ դրա գաղափարական ու սոցիալական ապահովման մասին: Կուսակցության այդ պահանջի կարևորությունը կուսբյուրոն ճիշտ ընկալեց և սևեռուն ուշադրություն նվիրեց կոմունիստների, արտադրության մարդկանց գաղափարական կոփվածքի, քաղաքական մակարդակի բարձրացման, կոլեկտիվի սոցիալական զարգացման խնդիրներին: Կուլտուրայի տան

ճեմասրահի պատերին փակցված լոզունգները, տնտեսության պլան-պարտավորությունները, բերքահավաքին նվիրված տեմպերի տախտակը և ցուցադրական այլ միջոցներ մոբիլիզացիոն վիճակում են պահում ռազմատենչներին. հուշում նրանց, թե պարենային ծրագրով ինչպիսի բնագծեր նվաճելու համար են պայքարում նրանք: Ամեն ոք, յուրաքանչյուր կոմունիստ, ինքն իրեն հաշիվ է տալիս, որոշում իր անելիքները, իր տեղն ու դերը՝ ընդհանուր պայքարում, նախանշած բնագծերի նվաճման գործում:

Պարենային ծրագրի գաղափարական ու սոցիալական ապահովման, սոցմրցության կազմակերպման ու ծավալման խնդիրները հավուր պատշաճի արծարծվեցին բյուրոյի հաշվետու զեկուցման մեջ և կոմունիստների ելույթներում: Դրանք գործարար քննարկումների առարկա են դարձել հաշվետու ժամանակաշրջանում տեղի ունեցած կուսակցական ժողովներում ու բյուրոյի նիստերում: Իրենց գործունեության մասին հաշիվ են տվել պրոպագանդիստներն ու քաղինֆորմատորները, ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարն ու ֆիզկուլտուրայի և սպորտի կազմակերպիչը:

Կոլտնտեսության նախագահ Ռ. Մարտիրոսյանը, գլխավոր գյուղատնտես Ս. Հովակիմյանը փորձառու պրոպագանդիստներ են: Պարապմունքների ժամանակ նրանք տեսական հարցերը սերտորեն շաղկապում են տնտեսության առջև ծառացած խնդիրների հետ, ունկնդիրներին հաղորդակից դարձնում ժամանակակից աշխարհում տեղի ունեցող իրադարձություններին:

Հաշվետու զեկուցման մեջ պատշաճ տեղ էր հատկացվել ազատ ժամանակի արդյունավետ անցկացման խնդրին: Նշվեց, որ կուլտուրայի տունը դարձել է աշխատավորների բազմակողմանի սպասարկման կարևոր օջախ: Կինոնկարներ են ցուցադրվում այստեղ, համերգներ ու ներկայացումներ կազմակերպվում, գործում են ինքնագործ խմբեր: Աշխատանքից ազատ ժամերին մարդիկ կարող են շախմատ ու շաշկի, բիլիարդ ու սեղանի թենիս խաղալ, մասնակցել սպորտային սեկցիաների պարապմունքներին:

Վաստակ ունեցող մարդու նկատմամբ ցուցաբերվում է ջերմ հոգատարություն: Կազմակերպվել են մեծարման երեկոներ: Մեծարվել են Հայրենական մեծ պատերազմի 25 մասնակիցներ, արտադրության առաջավորներ Մկրտիչ Թամարյանը, Պարսամ Միքայելյանը, Վարդան Ինջիղուլյանը, Հայրապետ Անդրեասյանը: Արտադրության առաջավոր կոլտնտեսականներն առաջին հերթին են օգտվում առողջարանային ու հանգստյան տան կամ տուրիստական շրջագայության ուղեգրերից:

Հաշվետու զեկուցման մեջ կուսբյուրոյի քարտուղարն այդ ամենին հավելում է սոցիալական զարգացման ուրիշ այլ նվաճումներ. ջրի ծորակ՝ բոլոր ընտանիքներում, մեծ մասն օգտվում է բնական գազից, տիպային մսուր-մանկապարտեզ, պարենային ու արդյունաբերական ապրանքների խանութներ, կենցաղի տուն: Այլ խոսքով, այն ամենը, ինչը համարվում է պարենային ծրագրի բաղկացուցիչ մասը, ինչը նպաստում է այդ ծրագրի տնտեսական խնդիրների հաջող լուծմանը: Դրանք գործոններ, պայմաններ են, որոնք Առատաշենի մարդկանց, հատկապես երիտասարդությանը կապում են հայրենի ոստանին, նրա հողին ու ջրին, հանրային արտադրությանը: Ապացույցը այն իրողությունը, որ միայն ընթացիկ հնգամյակում մոտ 100 նոր ընտանիքի հիմք է դրվել, 54 նոր մենատուն կառուցվել, երևան եկել նորապսակների երկու թաղամաս:

## ՎԱՂՎԱ ՕՐՎԱ ՄՏԱՀՈԳՈՒԹՅԱՄԲ

Նյութի շարադրանքից թող բնավ չթվա, թե թերությունները անտեսվել են, քննադատություն չի ծավալվել: Ամենևին ո՛չ, հաշվետու-ընտրական ժողովի առանձնահատկություններից մեկն այն է, որ ինչպես զեկուցողը, այնպես էլ մտքերի փոխանակության մասնակիցները, լավը, ուսանելին ընդհանրացնելուց զատ, առողջ քննադատության ու ինքնաքննադատության միջոցով բացահայտեցին թերություններն ու թերացումները:

Հաշվետու զեկուցման մեջ կուսբյուրոյի քարտուղարի տեսադաշտից ոչինչ չէր վրիպել: Այստեղ ճշմարիտ է ասված, որ բավական չէ լինել արտադրության առաջավոր, պետք է ակտիվություն հանդես բերել ամենուրեք, մինչդեռ կոմունիստներ Կ. Ղազարյանը, Մ. Գասպարյանը, Ժ. Գրիգորյանը և Ա. Ալեքսանյանը հաճախ թե-



րանում են մասնակցել քաղպարապմունքներին: Երբեմն կուլտուրայի տան խաղասենյակներն ու գրադարանը փակ են լինում:

Սկզբունքային քննադատությամբ էր տոգորված մեքենատրակտորային հավաքակայանի բրիգադավար Ռոբերտ Ղազարյանի ելույթը: «Մենք,— ասաց նա,— յոթ հազար տոննա բերք ենք հավաքել մեխանիզատորների ուժերով: Կերի կուտակումը գրեթե լիովին նույնպես նրանք են կատարել: Մեր ուժերի ներածին չափով օգտագործել ենք եղած հնարավորությունները: Սակայն մեր աշխատանքն ավելի արդյունավետ կլիներ, եթե մի շարք հանգամանքներ չխանգարեին գործին: Բանն այն է, որ արհեստանոց չունենք, մինչդեռ 40 տրակտոր և 17 ավտոմեքենա կա հավաքակայանում: Վատ են մեխանիզատորների աշխատանքի պայմանները: Կուսակցությունն այժմ մեծ ուշադրություն է նվիրում նավթամթերքների և քսայուղերի օգտագործմանը, սակայն մեզ մոտ նավթամթերքների պահեստը անմխիթար վիճակում է: Գյուղտեխնիկայի շրջանային միավորումը մեր տեխնիկայի համեմատ քիչ քսանյութեր է տալիս: Էլեկտրոդի, եռակցող ապարատի խիստ կարիք ունենք, իսկ գյուղտեխնիկան չի բավարարում դրանցով: Դրա պատճառով էլ բերքահավաքի ժամանակ նեղվում ենք տրանսպորտի հարցում, վարձով ավտոմեքենաներ ենք վերցնում, երբ մենք կարող ենք այդ անել մեր ուժերով»:

Քննադատական լուրջ խոսք եղավ այգիների նոսրության առնչությամբ: Զեկուցողն ասաց, որ նոսրության հետևանքով 149 հեկտար խաղողի այգում 23 հեկտարն ամուլ է, վազազուրկ. 150 ցենտներ բերքի դեպքում 345 տոննա խաղող է կորչում: «Մեծ ռեզերվ է այգիների լիարժեքության մակարդակի բարձրացումը, դրա միջոցով կարող ենք ավելի լավ արդյունքներ ձեռք բերել այդ ճյուղից»— ասաց բրիգադավար Ա. Սիմոնյանն իր ելույթում:

Կաթնապրանքային ֆերմայի վարիչ Շ. Շահվերդյանը նկատեց, որ ֆերմաներում աշխատանքի ու հանգստի պայմանները բարելավման կարիք ունեն, երիտասարդները խուսափում են այնտեղ աշխատելուց: Թեև պլանները կատարվում են, սակայն, արտադրանքը դեռ քիչ է, 14 կթվորից միայն չորսն են երեքհազարական, կադրերի թարմացումը երիտասարդների հաշվին խիստ անհրաժեշտություն է:

Կոլտնտեսության նախագահ Ռ. Մարտիրոսյանն իր մտահոգությունն արտահայտեց ֆերմաներում աշխատանքի ու հանգստի անբավարար պայմանների կապակցությամբ: Շինարարական կազմակերպությունները ցածր որակով են շահագործման հանձնել գոմերը: Կառուցվում է անասնապահի տուն, սակայն գյուղական շինարարության կոմբինատի № 46 շարժական շարասյունը շատ դանդաղ է կատարում այդ գործը: Նա իր ելույթի զգալի մասը նվիրեց սոցիալական զարգացման խնդիրներին, արտադրության զարգացման ռեզերվներին ու հեռանկարներին: Այդ առթիվ քննադատեց շրջանային ջրմուղվարչությանը՝ նոր թաղամասի ջրամատակարարման գործը, «Գյուղշին» տրեստի № 33 շարժական շարասյանը՝ կենցաղի տան կառուցումը, քաղսովետի շինգրասենյակին՝ կուլտուրայի տան նորոգումը ձգձգելու համար, առաջ քաշեց գյուղի փողոցների բարեկարգման, ասֆալտապատման խնդիրը. «Միջոցները կան, կատարող է պետք»:

Նախագահը նոր ռեզերվների օգտագործման առնչությամբ հատկապես կարևորեց այգիների վերակառուցման ավարտումն ու լիարժեքության ապահովումը, 47 հեկտար աղուտների մելիորացումն ու հարթեցումը և նշեց, որ այդ հողերը կարելի է հատկացնել կերային կուլտուրաներին ու մեկընդմիշտ լուծել կերի բազայի ամրապնդման հարցը: «Մեծ ռեզերվներ ունենք բանջարաբուծության բնագավառում,— ասաց նա,— եթե բոլոր բրիգադները հասնեն առաջավոր բրիգադի մակարդակին, ապա կարելի է 700—800 տոննա լրացուցիչ բերք ստանալ: Այնուհետև նախագահը ժողովականների ուշադրությունը հրավիրեց եկող տարվա բարձր բերքի համար նախադրյալներ ստեղծելու անհրաժեշտության վրա:

Այո՛, հաշվետու զեկուցումը և ելույթները տոգորված էին վաղվա օրվա, սոցիալ-տնտեսական նոր առաջընթացի ապահովման, պարենային ծրագրի կատարման նպատակով բոլոր ռեզերվների ու հնարավորությունների խելամիտ օգտագործման մտահոգությամբ: Այդպիսի մտահոգություն արտահայտեց նաև ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի երկրորդ քարտուղար Ռ. Հովհաննիսյանն իր ելույթում: Նա նախ և առաջ կոմունիստներին ծանոթացրեց շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիր-

ների և դրանց լուծման ընթացքին, ապա անդրադարձավ Առատաշենին առնչվող պրոբլեմներին...

## ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

Ունկնդրում ես հաշվետու զեկուցումը, ելույթները, զրուցում տնտեսության ղեկավարների, կոմունիստների, այգեգործ ու բանջարաբույծ շարքային մարդկանց հետ և խորապես համոզվում, որ նրանք գիտեն ճիշտ գնահատել իրենց արածն ու չարածը, անելիքներն ու ծառացած պրոբլեմների լուծման միջոցները: Մի պահ պատկերացնում ես, թե մեկ-երկու տարի անց, կրկին այցի գալով, ի՞նչ նոր բաներ կտեսնես: Պատրաստ կլինի անասնապահի տունը՝ բաղնիքով, հանգստի սենյակով, կանանց ու տղամարդկանց վարսավիրանոցով, ճաշարանով ու խաղասենյակներով: Վեր կհառնեն 450 տեղով դպրոցական նոր շենքը, նոր մսուր-մանկապարտեզը, երկհարկանի կենցաղի տունը, սպորտդպրոցը, կազմված կլինի գյուղի հեռանկարային զարգացման պլանը, բոլոր ընտանիքները կունենան բնական գազ և գյուղը թերևս կոյուղի, մեքենատրակտորային կայանը՝ տիպային արհեստանոց և այլն, և այլն:

Արտադրության բնագավառում կավարտվի խաղողի այգիների վերակառուցումը՝ զտասորտ տեսակներով, կվերացվի դրանց նոսրությունը, կներդրվի պոմիդորի «Տոկուն» սորտը և խոսք կբացվի այդ կուլտուրայի ամեն մի հեկտարից առնվազն 800 ցենտներ բերք ստանալու մասին, կլուծվեն տնտեսական ու սոցիալական այլևայլ հարցեր:

Հաշվետու-ընտրական ժողովը, որն անցավ գործարար, քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում, կոնկրետ խնդիրներ դրեց կոլտնտեսության վարչության, մասնագետների ու բրիգադավարների առջև: Գաղափարախոսական ու կուսակցական-կազմակերպական աշխատանքի բարելավման, արտադրության կուսակցական ղեկավարման ուժեղացման առաջադրանք ստացավ նորընտիր կուսբյուրոն, որի քարտուղար վերընտրվեց սկզբունքային կոմունիստ, վաստակաշատ երկրագործ Սարգիս Զաքարյանը:

**Արտավազդ ՍԱՔԱՆՅԱՆ**

---

# ՍՈՎԵՏԱՇԵՆԻ ԹՌՉՆԱԲՈՒՅԾՆԵՐԸ

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ էապես ավելացել են հավի մսի ու ձվի արտադրությունը, մթերումները ու սպառումը: Այդ գործում լուրջ ներդրում ունեն պետական թռչնաֆաբրիկաները:

Սովետաշենի թռչնաբուծական ֆաբրիկան հանրապետության համանման ձեռնարկությունների մեջ իրավամբ առաջատարի համբավ է վայելում: Այն ունի 91 թռչնանոց: Բրոյլերային, այսինքն՝ մսացու ճտերի թռչնանոցներից ամեն մեկում խնամում են 20—25 հազար գլուխ, իսկ ածան հավերի թռչնանոցներում՝ 4,5—5 հազար: Այժմ ֆաբրիկան պահում է մեկ միլիոն 284 հազար հավ ու ճուտ: Տարվա ընթացքում դրանց թիվն անցնում է յոթ միլիոնից: Յոթ միլիո՜ն հավ ու ճուտ: Բայց և այնպես ֆաբրիկայի հզորության չափանիշը միայն դա չէ: Այստեղ տարեկան արտադրվում է 6.100 տոննա հավի միս և տասը միլիոն ձու: Ընդ որում, «Հայթռչնարդի» ձվի պետական մթերումների 30 տոկոսը բաժին է ընկնում սովետաշենցիներին:

Իսկ թափոննե՞րը: Չէ՞ որ հսկայական թափոններ են առաջանում: Ի՞նչ են արվում դրանք: Ֆաբրիկայում ոչինչ չի կորչում, ոչինչ չի թափվում: Ամեն ինչ մշակվում է տեղում: Նույնիսկ փետուրների մնացորդները աղացվում, վերամշակվում, թռչունների համար կեր են դառնում: Ու այդպես՝ ամեն ինչ:

Հասկանալի է, որ միլիոնավոր թռչուններին ձեռքով կերակրել, ջուր տալ, խնամել պարզապես հնարավոր չէ: Բոլոր աշխատանքները, կամ համարյա բոլորը, մեքենայացված են: Իսկ այդ մեքենաները գործի են դնում մարդիկ՝ օպերատորները, մեխանիկները, թռչնապահները, վարորդները՝ ութ հարյուր հոգի: Եվ ահա նրանց ընդհանուր գործերի, ամենօրյա հոգսերի, աշխատանքում տեղ գտած թերությունների



մասին գործարար խոսակցություն ծավալվեց ֆաբրիկայի կուսկազմակերպության
հաշվետու-ընտրական ժողովում:

Կոմունիստները, որոնց մեծ մասը երիտասարդներ են (ֆաբրիկան էլ շատ ջահել
է՝ ընդամենը 14 տարեկան), ուշադրությամբ են լսում իրենց կազմակերպության բյու-
րոյի նույնպես երիտասարդ քարտուղար Սերգեյ Ստեփանյանի զեկուցումը՝ կուսբյու-
րոյի մեկ տարվա գործունեության վերաբերյալ: Նա մեծ ոգևորությամբ էր խոսում
այն մասին, թե ինչպես, գործարար մրցություն ծավալելով հնգամյակի չորրորդ տար-
վա պլանների կատարման և մեծ Հայրենականի հաղթական ավարտի 40-ամյակը
արժանավայել դիմավորելու համար, աշխատելով կոմունիստների նախաձեռնած
«Մայրաքաղաքի բնակչությանն ապահովել շատ ու բարձրորակ մսամթերքով» նշա-
նաբանով, ֆաբրիկայի կոլեկտիվը գերակատարել է այս տարվա ինը ամիսների պլա-
նը: Նա ասաց, որ հաշվետու ժամանակաշրջանում զգալի աշխատանք է կատարվել
արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման, տեխնիկական վերազինման ասպարեզում: Նոր սարքավորումներ են տե-
ղադրվել 12 թռչնանոցներում ու մինչև տարեվերջ կտեղադրվեն ևս չորսը, այսինքն՝
այնքան, որքան հնգամյակի անցած երեք տարիներին՝ միասին վերցրած: Հիմնական
վերանորոգման են ենթարկվել 26 թռչնանոցներ, ինկուբատորային արտադրամասը, վաթ-
սուն թռչնանոցների ջեռուցման համակարգը...

Այնուհետև քարտուղարը նշեց, որ հատուկ ուշադրություն է նվիրվել աշխատան-
քի կազմակերպման բրիգադային ձևի արմատավորմանը: Արդեն 14 բրիգադներ աշ-
խատում են կապալի եղանակով: Սակայն դեռևս նրանց աշխատանքի արդյունավե-
տությունը սպասվածից ցածր է: Պատճառն այն է, որ բրիգադային կապալը ամբող-
ջությամբ չի ներդրվում, նրա յուրաքանչյուր անդամի աշխատավարձը չի պայմանա-
վորվում կոլեկտիվի աշխատանքի վերջնարդյունքներով...

Սովետաշենի թռչնաբուծական ֆաբրիկան իր հաջողությունների հետ միասին
ունի և լուրջ թերություններ ու թերացումներ: Եվ այդ մասին էլ կշտամբանքի խիստ
խոսքեր եղան թե՛ զեկուցման մեջ, թե՛ կոմունիստների ելույթներում: Կուսկազմա-
կերպության քարտուղարը, վերլուծելով ինկուբատորային ու մայրական արտադրա-
մասերի կոլեկտիվների աշխատանքը, առանձնապես շեշտեց, որ ինկուբատորային
արտադրամասը, որի պետն է Ս. Աբովյանը, թեև հագեցած է հայրենական արտա-
դրության մեքենասարքավորումներով ու հանրապետությունում իր հզորությամբ և
հարմարություններով լավերից մեկն է, սակայն մշտապես թերակատարում է իր հիմ-
նական ցուցանիշի՝ ճտահանության, առաջադրանքը: Պլանով նախատեսված 65-ի
փոխարեն այն 57 տոկոսից չի անցնում: Արտադրամասի կոլեկտիվը, նրա ղեկավա-
րությունն ու կոմունիստները կարծես հաշտվել են եղած վիճակի հետ ու առաջընթացի
ոչ մի ուղի չեն որոնում:

Այնուհետև կուսկազմակերպության քարտուղարը թվերի անառարկելի տրամա-
բանությամբ իր խոսքը ամրապնդեց հետևյալ փաստով. տարեսկզբից մինչև հիմա
ինկուբացվել է յոթ միլիոն 567 հազար ձու: Պլանավորված էր դրանից ստանալ չորս
միլիոն 880 հազար ճուտ: Իսկ իրականում ստացվել է 800 հազարով պակաս: Պա-
կասը լրացնելու, մսի արտադրության առաջադրանքը կատարելու և անհրաժեշտ
գլխաքանակն ապահովելու համար ֆաբրիկան ստիպված եղավ երկրի այլ տնտեսու-
թյուններից պլանից ավելի ներմուծել երկու միլիոն 700 հազար հատ ձու: Այդ պատ-
ճառով 700 հազար ռուբլու վնաս կրեց, որը, հասկանալի է, բացասաբար անդրա-
դարձավ արտադրանքի ինքնարժեքի վրա:

Ստեղծված վիճակից դուրս գալու նպատակով ֆաբրիկայի ղեկավարությունը
մեկ ամսից ավելի սանացիայի (սանիտարական խզում) ենթարկեց ինկուբատորային
արտադրամասը: Այլ միջոցներ ևս ձեռնարկվեցին, որոնք կօգնեն արտադրամասի
կոլեկտիվին՝ բարձր ցուցանիշներով կատարելու առաջադրանքները:

Ապա խոսք բացվեց մայրական արտադրամասում տիրող դրության շուրջ: Հիմ-
նական ուշադրությունը բևեռելով դրսից ներմուծվող ձվի ստացման վրա, ասաց
կուսբյուրոյի քարտուղարը, մենք աչքաթող ենք արել մայրական կազմի վերարտա-
դրության, նրա մթերատվության բարձրացման հարցերը, աններելի հանդուրժողա-
կանություն ցուցաբերել արտադրամասում տոհմային, սելեկցիոն աշխատանքի ձա-
խողման, աշխատանքային կարգապահության թուլացման, մասնագետների և նյու-

թական պատասխանատու անձանց կողմից անպատասխանատվության դրսևորման նկատմամբ: Եվ ահա հետևանքը՝ արտադրամասը թերակատարեց ձվի համախառն արտադրության առաջին կիսամյակի պլանը. պակաս թողարկվեց 514 հազար ձու... Եվ չի կատարվել կարևոր ցուցանիշներից մեկի՝ մայրերի գլխաքանակի ավելացման պլանը. նախատեսված 80 հազարի փոխարեն, ածան հավերի գլխաքանակը կազմել է 52 հազար:

Ինչ խոսք, արտադրամասում տիրող վիճակը անհանգստացրել է ֆաբրիկայի դիրեկցիային և կուսբյուրոյին: Այս տարվա ապրիլին կուսբյուրոն հանգամանորեն քննարկել է մայրերի արտադրամասում տիրող վիճակը: Արտադրամասի պետ Ս. Գրիգորյանը և ուրիշ կոմունիստներ տույժերի են ենթարկվել, նրանց ժամանակ է տրվել՝ արտադրամասում հիմնովին բարելավելու գործերի վիճակը: Վերջերս կուսբյուրոն, անդրադառնալով ընդունած որոշման կատարման ընթացքին, դիրեկցիայի ու գլխավոր մասնագետների հետ եկան մի ընդհանուր կարծիքի. արտադրամասի պետ Ս. Գրիգորյանին տեղափոխել այլ արտադրամաս՝ մասնագիտական աշխատանքի: Արտադրամասի պետ նշանակվեց սկզբունքային կոմունիստ Հ. Վարդանյանը:

Վերջերս Սովետաշենի թռչնաբուծական ֆաբրիկայում իրականացրել են համարձակ մի նախագիծ: Անկումները կանխելու, հիվանդությունները վերացնելու և դրսից ձվի ներմուծումը իսպառ դադարեցնելու նպատակով ֆաբրիկայի ղեկավարությունը, դիրեկտոր Մարատ Ջանվելյանի նախաձեռնությամբ, ամբողջովին ոչնչացրեց մայրական կազմը: Նրա զբաղեցրած թռչնանոցները խնամքով ախտահանվեցին, մաքրվեցին եռացրած ջրով ու քիմիական լուծույթով: Արվեց ամեն ինչ՝ մայրական կազմը հիվանդություններից, հետևաբար, և անկումներից զերծ պահելու համար: Մեկ ամսվա ընթացքում Կիևից, Սիմֆերոպոլից և այլ տեղերից ներմուծվեց 200 հազար գլուխ մեկ օրական ճուտ: Այս միջոցառման շնորհիվ եկող տարվանից, առանց գրոհայնության, ֆաբրիկան կկատարի պետական բոլոր առաջադրանքները:

Նյութական արժեքների և սոցիալիստական ունեցվածքի պահպանման, վառելիքի, էլեկտրաէներգիայի ու ջրի խնայողության հարցերին անդրադառնալուց հետո, հաշվետու զեկուցման մեջ խոսք եղավ կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության մասին:

— Կադրերի ճիշտ ընտրությունը,— ասաց Ս. Ստեփանյանը,— իրոք, հաջողության ամենամեծ նախադրյալն է: Սակայն հաճախ շտապողականություն ենք ցուցաբերում հատկապես թռչնապահների ու բրիգադավարների ընտրության հարցում: Առանց նախապես ծանոթանալու, փորձնական ժամանակաշրջան տալու, միանգամից նյութական արժեքներ ենք վստահում պատահական մարդկանց: Օրինակ, Գարուշ Զիլֆազարյանին, որը բանվոր էր կաթսայատանը, առանց փորձաշրջան անցնելու, նրա ունակություններին ծանոթանալու, վստահեցինք մայրական արտադրամասի № 1 բրիգադը: Եվ ի՞նչ: Արտադրամասի ղեկավարությունը, մասնագետները երկար ժամանակ չէին ուզում տեսնել, թե ինչպես այդ բրիգադը հետզհետե կազմալուծվում է, ընկնում է թռչունների մթերատվությունը: Ոչ ոք չէր ուզում «վատամարդ» լինել, հարց բարձրացնել բրիգադի գործերը շտկելու համար: Ի վերջո, դիրեկցիան, նկատի ունենալով բրիգադի արտադրական ցածր ցուցանիշները, նրան ազատեց բրիգադավարի պաշտոնից...

Հաշվետու-ընտրական ժողովը անչափ կարևորեց աշխատողների շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական արդյունավետ աշխատանքի դերը տնտեսական խնդիրների լուծման գործում: Դրան մեծապես նպաստեցին ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան (1983 թ.) պլենումների որոշումները: Դրանք լայնորեն քննարկվել են արտադրության բոլոր օղակներում, կազմվել է գաղափարական աշխատանքի գործնական պլան, որով և ղեկավարվում է կուսբյուրոն: Ընդլայնվել է գաղափարախոսական աշխատանք կատարող ակտիվի կազմը: Ֆաբրիկայի ղեկավար աշխատողների, մասնագետների գերակշռող մասը պրոպագանդիստներ, քաղինֆորմատորներ և ագիտատորներ են: Կուսկազմակերպության ժողովն առանձնապես նշեց պրոպագանդիստներ Լ. Մելքումյանի, Վ. Մարգարյանի, ագիտատորներ Ա. Թերզիկյանի, Լ. Ադամյանի, քաղինֆորմատոր Լ. Վարդանյանի շնորհակալ աշխատանքը:

Գաղափարախոսական աշխատանքի կազմակերպման լայն հնարավորություններ



ունեն ֆաբրիկայում մշտապես անցկացվող միասնական քաղօրերը: Սովորաբար դրանց մասնակցում են ՀԿԿ Շահումյանի շրջկոմի բաժինների վարիչները, ագրոարդյունաբերական շրջանային խորհրդի անդամներ: Ժողովում նշվեց, որ առանձին աշխատողներ, այդ թվում նաև բրիգադավարներ գերադասում են անձնական շահը, մերժելի վարքագծով լարված մթնոլորտ են ստեղծում բրիգադում, տեղամասում: Գաղափարախոսական աշխատանքը. դեռևս չի դարձել ֆաբրիկայի կուսկազմակերպության յուրաքանչյուր անդամի կենսական գործը: Եվ օրինաչափ է, որ կուսբյուրոյի անդամ, անասնաբույժ Հ. Վարդանյանը, իր ելույթում խոսեց այդ հարցերի մասին և նշեց, որ առողջ մթնոլորտն ու բարձր տրամադրությունը լավ, արդյունավետ աշխատանքի երաշխիք են:

ՀԿԿ Շահումյանի շրջկոմի անդամ, թռչնապահ Սեդա Ներսիսյանը, որն աշխատում է № 90 թռչնանոցում, իր ելույթն սկսեց բրոյլերային № 2 արտադրամասի ձեռք բերած հաջողությունների նկարագրմամբ: Նա ասաց, որ թռչունների պահվածքի օրերի թիվը իրենց մոտ իջեցվել, հասցվել է 60—62 օրվա:

Իսկ ի՞նչ է նշանակում թռչունների պահման օրերի թվի կրճատումը: Նախատեսված է, որ ֆաբրիկայում հավի ճուտը մինչև մսացու դառնալը, այսինքն՝ 1.100—1.200 գրամ քաշ ունենալը, պետք է պահել, կերակրել ու խնամել 70 օր: Իսկ եթե այդ ճուտը նախատեսված քաշին հասնում է, ասենք, տասը օր շուտ, նշանակում է՝ տնտեսվում է տասն օրվա կեր, խնայվում է մարդու աշխատանքը, բնակչությանը հասնում է ավելի շատ միս... Առավել քիչ օրերում մսացու ճուտ աճեցնելու ռեկորդը պատկանում է Բրազիլիային: Այնտեղ ճուտը մսացու է դառնում 37 օրվա ընթացքում: Հունգար թռչնապահները մսացու ճուտ են ստանում 42 օրում: Սովետական մերձբալթյան հանրապետություններում այդ գործընթացը տևում է 49 օր, իսկ Անդրկովկասի հանրապետություններում՝ շուրջ 90: Սովետաշենի թռչնաբուծական ֆաբրիկայում այժմ ձգտում են հասնել 57 օրվա սահմանին...

Նորից անդրադառնանք Սեդա Ներսիսյանի՝ այդ ջահել թռչնապահուհու, ելույթին: Իրենց բրիգադի հաջողությունների մասին խոսելուց հետո նա ասաց.

— Արդեն ութ տարի է, ինչ աշխատում եմ ֆաբրիկայում: Եվ աշխատանքային առաջին օրից մինչև հիմա նույն տեղում եմ՝ № 2 բրոյլերային արտադրամասի № 3 բրիգադում: Դեռ տարեսկզբին ես պարտավորվել եմ արտադրել ու պետությանը հանձնել հարյուր տոննա թռչնի միս: Մինչև օրս հանձնել եմ 76 տոննա: Այսօր, հաշվետու ժողովում պարտավորվում եմ տարեկան պլանը կատարել ժամկետից երկու ամիս շուտ և մինչև տարեվերջ լրացուցիչ արտադրել քսան տոննա միս...

Սիսիանի շրջանի Նորավան գյուղի մանկապարտեզում դաստիարակչուհի էր Լեոնիկ Ադամյանը, հետո դարձավ այդ մանկապարտեզի վարիչը: Իսկ երբ ամուսնացավ, ընտանիք կազմեց, տեղափոխվեց Սովետաշեն: Եվ ահա 11 տարի է, ինչ Լեոնիկ Ադամյանն աշխատում է թռչնաբուծական ֆաբրիկայում: Նա ինկուբատորային արտադրամասի ավագ օպերատոր է, իր գործի գիտակ ու նվիրումով աշխատող մի անձնավորություն: Եվ պետք էր տեսնել, թե ինչպիսի՜ սրտի ցավով էր նա խոսում ինկուբատորի, մայրական արտադրամասի, ընդհանրապես ֆաբրիկայի աշխատանքում տեղ գտած թերությունների մասին: Սկզբունքայնության համար էլ կոմունիստները նրան երկրորդ անգամ ընտրեցին կուսբյուրոյի կազմում: Լեոնիկ Ադամյանը միաժամանակ Շահումյանի կուսշրջկոմի անդամ է ու պարտքի մեծ զգացումով է կատարում կուսակցական հանձնարարությունները:

Ժողովի մասնակիցները ուշադրությամբ լսեցին ավտոփականագործ Ռ. Մարգարյանի, մեխանիկական արհեստանոցի բանվոր Վ. Մեսրոպյանի ելույթները: Վ. Մեսրոպյանը պատմեց այն մասին, թե ինչպես մեխանիկական արհեստանոցի աշխատողները ֆաբրիկայի 15 թռչնանոցներում տեղադրել են նոր, առավել կատարյալ ջրախմոցներ, նորոգել 14 թռչնանոցների տեխնոլոգիական սարքավորումները: Այնուհետև նա ասաց.

— Ֆաբրիկայի քսան թռչնանոցներում դեռևս գործում են «Բրոյլեր—20» մակնիշի տեխնոլոգիական սարքավորումներ, որոնց ծառայության ժամկետները լրացել են հինգ տարի առաջ և որոնք մաշվել են թե՛ ֆիզիկապես, թե՛ բարոյապես: Այդ սարքավորումներից այլևս չեն արտադրվում: Այդ իսկ պատճառով ոչ մի պահեստամաս չենք ստանում... Մեխանիկական արհեստանոցն ունի ընդամենը մեկ խառա-

տային հաստոց, որով, բնականաբար, հնարավոր չէ բավարարել մեր փաբրիկայի բոլոր պահանջները: Այդ է պատճառը, որ մի որևէ մեքենամաս նորոգելու, մի հասարակ բան պատրաստելու համար օրերով դիմում ենք այլ հիմնարկությունների օգնությանը և միշտ չէ, որ նրանք մեզ ընդառաջում են, չէ՞ որ նրանք էլ իրենց գործերն ունեն, իրենց հոգսերը...

Սովետաշենի թռչնաբուծական փաբրիկայում Մարատ Ջանվելյանին գիտեն վաղուց: Նա սկզբում անասնաբույծ էր, ապա՝ գլխավոր անասնաբույծ, և ահա երեք տարի է, ինչ կանգնած է ձեռնարկության ղեկի մոտ: Նա արտադրության այն հրամանատարներից է, որը լավ գիտի փաբրիկայի բոլոր տեղամասերը, անձամբ ճանաչում է բոլոր աշխատողներին, ունի մասնագիտական կրթություն, տարիների փորձ ու հմտություն: Իր ելույթում նա նշեց, որ կան բոլոր նախադրյալները պետական առաջադրանքներն ամբողջությամբ կատարելու համար: Չէ՞ որ,— ասաց նա,— նախորդ հնգամյակի համեմատությամբ, այս հնգամյակի չորս տարում մեր փաբրիկան արդեն թողարկել է տասը հազար տոննայով ավելի թռչնի միս:

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրի տեղակալ Վ. Սերոբյանը համեմատության զուգահեռներ անցկացրեց կոլտնտեսությունների և թռչնաբուծական փաբրիկաների հնարավորությունների միջև: Նա ասաց, որ կոլտնտեսությունները պետությունից ոչ մի գրամ կեր չեն ստանում թռչունների համար, նրանք հավերը պահում են իրենց ոչ նախագծային թռչնանոցներում, չունեն այնպիսի սարքավորումներ, ինչպիսիք կան փաբրիկայում: Եվ, չնայած այդ ամենին, նրանք ստացել են հանրապետությունում արտադրվող ձվի կեսից ավելին: Դուք, ասաց մինիստրի տեղակալը,— ունեք հիանալի պայմաններ, մենք ձեզ տալիս ենք ամեն ինչ և իրավունք ունենք ըստ այդմ էլ ներկայացնելու մեր պահանջները: Ձեր փաբրիկան հաջողություններ ունի, սակայն առավել մեծ են նրա հնարավորությունները՝ բնակչությանը թարմ, բարձր որակի մսով ու ձվով ապահովելու համար:

Ծաղումյանի կուսշրջկոմի քարտուղար Բ. Կարապետյանը անդրադարձավ փաբրիկայի գործունեությանը և ասաց. «Մեզ համար հաճելի է լսել, թե ինչպես առևտրական կազմակերպությունները գոհունակությամբ են ընդունում ձեր թողարկած մթերքը: Եթե Սովետաշենի փաբրիկայի հավ է, ասում են նրանք, ուրեմն լավն է: Այդ բանին դուք հասել եք դժվարությամբ և պետք է այսուհետև էլ բարձր պահել բարի համբավը: Ձեր փաբրիկան կարող է և պետք է հասնի պետական ստանդարտին՝ մսացու ճուտը 1.100 գրամից ոչ պակաս և 1.500 գրամից ոչ ավելի»:

Կուսշրջկոմի քարտուղարը նշեց, որ ժողովում փաբրիկայի սոցիալական հարցերի մասին քիչ խոսվեց, իսկ այդ գործում շատ թերություններ կան: Նա ասաց, որ փաբրիկայի բանավանը պետք է դարձնել Սովետաշենի օրինակելի թաղամաս:

Հաշվետու-ընտրական ժողովը նորընտիր կուսբյուրոյից պահանջեց՝ ղեկավարվելով կուսակցության արդի պահանջներով, այսուհետ գործուն միջոցներ ձեռնարկել տեղ գտած թերությունները վերացնելու համար: Որոշվեց աշխատողների շրջանում տարվող կազմակերպչական ու գաղափարախոսական ողջ գործունեության բովանդակությունը, ոճն ու մեթոդները լիովին համապատասխանեցնել կուսակցության արդի պահանջներին: Կուսբյուրոյի և դիրեկցիայի առջև խնդիր դրվեց հասնել այն բանին, որ կոլեկտիվը պատվավոր բաժին ունենա պարենային ծրագրի կատարման գործում: Նորընտիր կուսբյուրոյին հանձնարարվեց գործնականորեն զբաղվելու կոլեկտիվի սոցիալ-կուլտուրական զարգացման հարցերով:

Ժողովն ընտրեց կուսբյուրոյի նոր կազմ: Կուսբյուրոյի քարտուղար վերընտրվեց Ս. Ստեփանյանը:

**Խաչատուր ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**



# ԵԹԵ ՄԻԱՆԱՆ ՋԱՀԵԼՆԵՐՆ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ...

ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ մարդկության ներկան է ու ապագան: Հողագնդի բնակչության կեսից ավելին մինչև 25 տարեկան պատանիներ ու աղջիկներ են: XX դարը երիտասարդության համար հույսերի ու տագնապների, որոնումների ու պայքարի դարաշրջան է: Ռուսաստանում սովետական կարգերի հաստատումից և ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակից ի վեր, իրադարձությունները մեր մոլորակում սրընթաց թափ ստացան, դարի երկրորդ քառորդից սկսած՝ մարդկային միտքն աննախընթաց թռիչք գործեց:

Գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ երկրորդ աշխարհամարտում Սովետական Միության տարած համաշխարհային պատմական հաղթանակի նշանակալից արդյունքներից մեկն էլ այն է, որ վիթխարիորեն աճել է երիտասարդության դերը մարդկության ճակատագրում: Երիտասարդությունը մեծ առաքելություն ունի սոցիալիստական ուղի բռնած երկրների ամրապնդման ու զարգացման, գաղութային և կախյալ ժողովուրդների ազատագրական շարժումների ծավալման, հանուն ազատության, դեմոկրատիայի ու խաղաղության պրոգրեսիվ մարդկության պայքարի ասպարեզներում: Այժմ առաջադեմ երիտասարդությունը հսկայական դեր է խաղում միջազգային իմպերիալիզմի խարդավանքների, ջերմամիջուկային, հրթիռային և մարդկանց մասսայական ոչնչացման մյուս միջոցների կրճատման և իսպառ վերացման համար ամբողջ աշխարհով մեկ ծավալված գոտեմարտում:

Եվ այսօր, երբ ամերիկյան իմպերիալիզմի մեղքով մարդկությունը կանգնած է ջերմամիջուկային պատերազմի, ինչպես և կոսմիկական տարածության ռազմականացման ռեալ վտանգի առջև, առանձնահատուկ նշանակություն է ստանում երիտասարդության ամենաակտիվ մասնակցությունն այդ վտանգի դեմ մղվող պայքարին: Հողագնդի բոլոր ծագերում՝ Եվրոպայում, Ամերիկայում, Ասիայում և այլուր, բյուրավոր պատանիներ ու աղջիկներ գտնվում են միջազգային իմպերիալիզմի խելացնոր մտադրությունների դեմ ծառացած միլիոնավոր բարի կամքի մարդկանց առաջին շարքերում: Այդ է վըկայում երիտասարդության և ուսանողների անվեհեր մասնակցությունը հակապատերազմական և հակաիմպերիալիստական ելույթներին՝ հանուն ազատության, բարեկամության ու խաղաղության ամբողջ աշխարհում:

Սովետական Միության գլխավորած սոցիալիստական ընկերակցության հենինակությունն ու հզորությունը, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի անկասելի նվաճումները, կապիտալի երկրներում չդադարող սոցիալական մարտերն ու քաղաքական պայքարը մեծապես ներգործում են միջազգային երիտասարդական շարժման զարգացման վրա: Եվ աշխարհի բախտը, նրա հեղափոխական հետագա վերափոխումների ճակատագիրը զգալիորեն պայմանավորված են նրանով, թե ո՛ւմ հետևից կգնան հողագնդի միլիոնավոր պատանիներն ու աղջիկները: Երիտասարդության մտքի ու սրտի նվաճման համար մղվող ճակատամարտը, վերջին հաշվով, սոցիալիզմի և կապիտալիզմի քաղաքական ու գաղափարախոսական անդադրում պայքարի ամենաառաջին տեղամասերից մեկն է:

Գաղտնիք չէ, որ աշխարհում գոյու-

թյուն ունեն ու գործում են երիտասարդական շարժման երկու ուժեր—առաջադեմ՝ դեմոկրատական, և հետադիմական՝ պրոիմպերիալիստական: Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո անցած չորս տասնամյակների փորձը վկայում է, որ ծանրության նժարն անընհայտորեն թեքված է առաջինի կողմը:

Եվ, որպեսզի հողագնդի առաջադեմ, դեմոկրատական և խաղաղասեր երիտասարդությունն ու ուսանողությունը հաջողությունների հասնեն, նրանք պետք է ունենան իրենց մարտական կազմակերպությունները: Եվ ունեն. Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան և Ուսանողների միջազգային միությունն են դրանք: Եվ, որ շատ կարևոր է, նրանց առաջատարն են սովետների երկրի երիտասարդությունը և իր փառապանծ ավանգարդ լենինյան կոմերիտմիությունը: Աշխարհի դեմոկրատական երիտասարդության շարքերն անընդհատ ընդլայնվում, ուժերն անընդհատ ամրապնդվում են: Այսպես, եթե 1919 թվականին Երիտասարդության կոմունիստական ինտերնացիոնալի առաջին կոնգրեսին մասնակցում էին երիտասարդական 14 միություններ՝ իրենց շարքերում ունենալով 219 հազար անդամ, ապա 1945-ի նոյեմբերին Լոնդոնում կայացած համաշխարհային կոնֆերանսին ներկա էին 63 երկրների երիտասարդության ներկայացուցիչներ, որոնք ներկայացնում էին պատանիների ու աղջիկների ավելի քան 200 կազմակերպություններ: Կոնֆերանսի հավաքված պատվիրակներն ի լուր աշխարհի հավաստեցին իրենց անհողդողդ կամքը՝ պայքարել հանուն երիտասարդության միասնության ամբողջ հողագնդում, հանուն բոլոր ռասաների, ազգությունների ու դավանանքի պատանիների ու աղջիկների միասնության, ժողովուրդների խոր, անկեղծ բարեկամության, արդար ու տևական խաղաղության, ընդդեմ կարիքի ու գործազրկության: Հենց այս կոնֆերանսում էլ ստեղծվեց Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան և որոշվեց պարբերաբար կազմակերպել երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոներ, որպես հողագնդի միլիոնավոր պատանիների ու աղջիկների բարի կամքի դրսևորման առավել մասսայական ու նպատակալաց միջոցառում: Այդ ժամանակից ի վեր տեղի է ունեցել դեմոկրատական երիտասարդության 11 փառատոն, որոնց մասնակցել են աշխարհի երիտասարդության և ուսանողների տասնյակ ու տասնյակ հազար ներկայացուցիչներ:

Հասկանալի է, որ միջազգային կապիտալիզմի պարագլուխները քաջ գիտակցում են, թե ժամանակակից պայմաններում ո՞ւր կարող է տանել երիտասարդության քաղաքական ինքնագիտակցության սթափ զարգացումը: Այդ մասին շատ պարզորոշ արտահայտվել է Հռոմի կաթոլիկ եկեղեցու կարդինալ Ռոնկելին՝ հակակոմունիզմի քարոզիչներից մեկը. «Չեզոքացնել աշխատավոր երիտասարդության լայն խավերին, թույլ չտալ նրան ընդունել մարքսիստական ուսմունքը— այս է մեր տակտիկական խնդիրը»,— ասել է նա:

Ջգտելով գտնել աշխարհում դեպքերի զարգացման պատմական օրինաչափ ընթացքը շրջելու և փոխելու լծակներ, բուրժուական գաղափարախոսներն իրենց պրոպագանդան հիմնականում ուղղում են երիտասարդությանը՝ փորձելով նրա քաղաքական ակտիվությունն ու գաղափարական կողմնորոշումը վարել իրենց հարկավոր հունով, երիտասարդներին դաստիարակել մարտնչող հակակոմունիզմի ոգով, պատանիներին ու աղջիկներին դարձնել «ազատ աշխարհի» իդեալների պաշտպաններ ու ջատագովներ: Ահա նրանց խոստովանություններից մեկը՝ «Օբսերվատորե Ռոմանո» լրագրում: «Մենք պետք է գործադրենք մեր հզոր միջոցները, որպեսզի երիտասարդությանը հեռացնենք քաղաքականությունից, խրախուսենք նրա տարվելը սպորտով, սիրով, մոլեխաղերով, պարով, մի խոսքով ամեն ինչով, բացի քաղաքականությունից, որն ուղղակի նրան տանում է կոմունիստների գիրկը»:

Եվ այսպես, միջազգային երիտասարդության լուսապատկերը ներկայումս խայտաբղետ է ու տարադեմ: Պատանիներն ու աղջիկները որոշակիորեն համախմբվում են երկու հակադիր բևեռներում: Մեկում դեմոկրատական-խաղաղասիրական շարժումն է, որն ընդլայնվում և ամրապնդվում է օրեցօր, մյուսում՝ հետադիմական պրոիմպերիալիստական շարժումը, որն ապազգայնացուրկ է և որի ակտիվությունը հիմնված է միջազգային իմպերիալիզմի հատկացրած միլիոնավոր դոլարների վրա: Իսկ երիտասարդությանը «չեզոքացնելուն» ուղղված ջանքերի հետևում թաքնված է կապիտալիզմի խոր ճգնաժամը՝ որպես «երիտասարդության ճգնաժամ» ներկայացնելու տմարդի ցանկությունը:

Դեմոկրատական երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոների վիթխարի հաջողություններն ու հաղթարշավը վկայում են, որ Պրագայում տեղի ունեցած I փառատոնից հետո (1947 թ.) խաղաղության և բարեկամության, հակապատերազմական, հակաիմպերիալիստական գաղափարներն ավելի ու ավելի են համակել հողագնդի միլիոնավոր պատանիների սրտերը, սփռվել են ողջ աշխարհով մեկ: Այս փաստի ակնառու վկայությունն է այն, որ եթե Դեմոկրատական երիտասարդության և ուսանողների համաշխարհային I փառատոնին մասնակցում էին 71 երկրների ավելի քան 17 հազար ներկայացուցիչներ, ապա XI փառատոնին (1978 թ., Հավանա)՝ 145 երկրների պատանիների ու աղջիկների մոտ 30 հազար պատվիրակներ:

Սակայն քնած չեն դեմոկրատական երիտասարդության և ուսանողների փառատոների թշնամիները: Հատկապես ակտիվ գործունեություն է ծավալել ԱՄՆ-ի Կենտրոնական հետախուզական վարչությունը (ԿՀՎ): Ինչպես վկայում է ամերիկյան «Ռիմպարտ» ժուռնալը, 1952 թվականից, ԿՀՎ-ն ամեն տարի տասնյակ միլիոնավոր դոլար է վճարում տարբեր տիպի երիտասարդական միությունների, որոնք հանդես են գալիս որպես ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության գործիք՝ համաշխարհային երիտասարդական շարժման ոլորտում իրականացնելով ամերիկյան հետախուզության քայքայիչ ձեռնարկումները: Նման գործունեություն է ծավալել և ԿՀՎ-ի կրտսեր գործընկերը՝ անգլիական «Սիկրետ ինտելիջենս սերվիս» (ՍԻՍ) հետախուզությունը:

Հիշենք արևմտյան մամուլի հակակոմունիստական և հակասովետական սանձարձակ պրոպագանդան VI փառատոնի (1957 թ., Մոսկվա) նախօրեին: Հետադիմական ուժերը նույնիսկ առաջարկեցին կազմակերպել երիտասարդության ՆԱՏՕ-ական փառատոն:

1959 թվականի հուլիսին, Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայում կայացած VII փառատոնի ժամանակ, ամերիկյան հետախուզությունն ստեղծեց հակափառատոնային մի շարք կենտրոններ և գործակալություններ, հակակոմունիստորեն տրամադրված բանդաներ, որոնց անդամների թիվը հասնում էր 6 հազարի: Հրահրվելով ինչպես ԿՎՀ-ի, այնպես էլ անգլիական ՍԻՍ և արևմտագերմանական «Բունդես նախրիխտեն դիպորտ» (ԲՆԴ) հետախուզությունների կողմից՝ նրանք փորձեցին ձախողել փառատոնի միջոցառումները: Կապիտալիստական երկրում տեղի ունեցած առաջին փառատոնն էր այդ: Իբրև այդ փառատոնի մասնակից, ցանկանում եմ մի փոքր հանգամանորեն անդրադառնալ դրան: Աշխարհի 112 երկրներից ավելի քան 18 հազար պատանիներ ու աղջիկներ էին հավաքվել կապույտ Դանուբի գեղատեսիլ ափին: Ծեփորներն ազդարարում են հանդիսավոր շքերթի սկիզբը: Աշխարհի դեմոկրատական երիտասարդության հիմնի հնչյունների ներքո դաշտ են մտնում հողագնդի հինգ աշխարհամասերի խաղաղասեր պատանիների ու աղջիկների պատվիրակները:

— Խաղաղությո՜ւն, բարեկամությո՜ւն,— հնչում է բազում լեզուներով: Հազարավոր աղավնիներ թևածում են մարզադաշտի վրա...

Բուռն խանդավառությամբ են դիմավորում հանդիսականները սովետական երիտասարդության պատվիրակներին, որոնք բարձր պարզած տանում են ՍՍՀՄ պետական դրոշը, գերբը, 15 հանրապետությունների պետական դրոշները, սովետական արքանյակների և առաջին հրթիռի մանրակերտները:

Երկժամյա հանդիսավոր շքերթին հաջորդեցին գեղարվեստական ու սպորտային մասսայական ելույթներ, իսկ վերջում մարզադաշտի հսկայական կանաչ դաշտի վրա ալեկոծվեց երիտասարդական վալսը: Հետադեմ ուժերը, որոնք, ի դեպ, փառատոնի կազմակերպիչներից երեք անգամ ավելի միջոցներ էին ծախսել, հենց առաջին օրը փորձեցին ստվեր գցել տոնախմբության վրա: Բայց այդ նրանց չհաջողվեց: Պատահեց այսպիսի մի դեպք: Փառատոնի մասնակիցների հանդիսավոր շքերթից, գեղարվեստական ելույթների ավարտից հետո, մարզադաշտում մարեցին լույսերը՝ հրավառություն սկսելու համար: Օգտվելով մթությունից՝ մի խումբ պրովոկատորներ փորձեցին պոկել մարզադաշտի տրիբունաներից վեր ամրացված ամերիկյան պետական դրոշը, որի մոտ նստած էին մի խումբ սո-

վետական զբոսաշրջիկներ: Իսկ այդ պահը լուսանկարելու համար այդտեղ նախօրոք հավաքվել էին ռեակցիոն թերթերի լուսանկարիչներ... Սովետական զբոսաշրջիկների աչալրջության, կարգ պահպանող ավստրիական առաջադեմ երիտասարդական կազմակերպությունների ներկայացուցիչների միջամտության շնորհիվ պրովոկացիան ձախողվեց:

Վիեննայի փառատոնում ամենատարբեր ձևերով դրսևորվեց աշխարհի միլիոնավոր բարի կամքի երիտասարդների՝ խաղաղության համար պայքարելու վճռականությունը: Խաղաղության գաղափարը թևածում էր բոլոր միջոցառումներում: Փառատոնի պատվիրակները, անկախ իրենց քաղաքական համոզմունքներից, կրոնական դավանանքից, հուժկու «ո՛չ» ասացին նոր պատերազմին, սպառազինությունների մրցավազքին, ատոմային և ջրածնային զենքի փորձարկումներին:

Հիշարժան է հուզիչ ու հետաքրքրական մի փաստ: Հեռավոր Ճապոնիայի պատվիրակները Հիրոսիմայից իրենց հետ Վիեննա էին բերել մի երիտասարդի անյունասափորը և այն իրենց հետ տանում էին ամենուր, մասնակից դարձնում բոլոր միջոցառումներին: Հիրոսիմայի վրա նետված ամերիկյան ատոմային ռումբից տղան ճառագայթային հիվանդություն էր ստացել և 14 տարի տառապել: Լսելով փառատոնի մասին, նա բուռն ցանկություն էր հայտնել լինել Վիեննայում, իր ձայնը միացնել նոր պատերազմի վտանգի դեմ պայքարող միլիոնավոր պատանիների ու աղջիկների ձայնին: Եվ, չնայած ծանր հիվանդ, պատանին անհամբեր սպասում էր մեկնման օրվան: Սակայն նրա ցանկությունը չիրականացավ: Վիեննա մեկնելուց երեք օր առաջ նա մահացավ ճառագայթային հիվանդությունից: Ընկերները որոշեցին անկատար չթողնել նրա իղձը և, ահա, պատանու անյունը, սափորի մեջ ամփոփված, 47 օր ճանապարհ անցնելով, հասավ Վիեննա: Նրա անունը կար ճապոնական պատվիրակության կազմում, նրա համար վիզա էր ստացված: Եվ, երբ փառատոնի բացման ժամանակ ճապոնական պատվիրակությունը բարձր պարզած տանում էր «Հիրոսիմային՝ ո՛չ» տրանսպարանտը, իսկ դրա տակ հերոսիմացի պատանու անյունասափորը, ողջ մարզադաշտը վանկարկում էր՝ «Ո՛չ, Հիրոսիման չպետք է կրկնվի»:



Ժողովուրդների բարեկամության վառ ցույց էր այդ փառատոնը, ցույց ընդդեմ գաղութակալության, հանուն ճնշված ժողովուրդների ազատության և անկախության:

Փառատոնի հուզիչ պահերից էր մասնակիցների այցելությունը Ներքին Ավստրիայում գտնվող ֆաշիստական Մաութհաուզնի համակենտրոնացման ճամբարը:

Հանդիսավոր լռության մեջ, Մոցարտի Ռեքվիեմի հնչյունների ներքո, բոլորը գնում են դեպի ճամբարի կենտրոնական հրապարակը: Եղբայրական գերեզմանի վրա բազմերանգ ծաղիկների պսակներ են դրվում: Սկսվում է միտինգը...

Մաութհաուզեն եկած պատանիներն ու աղջիկները երդվում են, որ երբեք չպե՛տք է կրկնվի պատերազմը:

Ջերմ էր վիեննացիների վերաբերմունքը փառատոնի մասնակիցների նկատմամբ: Մի օր անձրևի պատճառով բավական երկար ստիպված էինք մնալ ստորգետնյա անցումի թունելում: Եվ ահա մեզ մոտեցավ 50—55 տարեկան, միջահասակ, ժպտուն աչքերով մի տղամարդ և նրա հետ 18—20-ամյա մի երիտասարդ. երկուսն էլ բանվորական արտահագուստներով: Կոշտուկածածկ ձեռքերով տարեցը խառատ էր Վիեննայի խոշոր ձեռնարկություններից մեկում: Հայտնելով, որ ողջ Վիեննան հիացած է փառատոնով, նա ասաց, թե ինքը մի քիչ հասկանում է ռուսերեն և սկսեց հարցեր տալ Սովետական Միության մասին: Նրա հարցերից մեզ համար մի անգամ ևս պարզ դարձավ, թե բուրժուական մամուլն ու ռադիոն ինչպես են ապակողմնորոշում հասարակ մարդկանց, աշխատավորներից թաքցնում Սովետական Միության նվաճումները, ինչպիսի՜ առասպելներ ու հերյուրանքներ են տարածում մեր երկրի մասին:

Փառատոնի ընթացքում սովետական պատվիրակությունը հանդիպումներ ունեցավ 72 երկրների երիտասարդների հետ, մասնակցեց ազգային և միջազգային քննարկումների, համերգների, փառատոնի բոլոր ցուցահանդեսներին:

Վիեննայի փառատոնից երեք տարի անց՝ 1962 թ., Հելսինկի փառատոնի օրերին, ամերիկյան ԿՀՎ-ն ստեղծեց «Ֆրիդոմ դայնեմիքս» հակակոմունիստական երիտասարդական խումբը: Ստոկհոլմում կազմակերպվեց «Սկանդինավյան երիտասարդական ծառայություն» շտաբը: Այս երկու կազմակերպությունները փորձեցին Հելսինկիում դիվերսիաներ ծավալել: ԿՀՎ-ն Հելսինկի ուղարկեց բազմաթիվ ջարդարարների: Ամերիկյան «Ուոլլ ստրիտ ջոռնելը» գրեց, որ հակափառատոնային միջոցառումների վրա ԿՎՀ-ն ծախսել էր 40 միլիոն դոլար:

Կուբայի հանրապետության մայրաքաղաք Հավանայում 1978 թվականին կայացած XI փառատոնը հարուցեց հետադիմական ուժերի հակակոմունիստական մոլուցք: Անգլիական «Թայմսի» մեկնաբան Բեռնարդ Լևին այդ օրերին գրում էր. «Նա, ով Անգլիայից Հավանա գնա, կընդգրկվի կոմունիստական պրոպագանդայի ոլորտը» և բրիտանական երիտասարդության խորհրդին կոչ էր անում «չմասնակցել այդ միջոցառմանը»:

Ամերիկյան, անգլիական, արևմտագերմանական հետախուզությունները հակափառատոնային գործունեություն ծավալելու համար ստեղծել են, այսպես կոչված, «քաղաքական հատուկ օպերացիաների սեկցիաներ», որոնք հակակոմունիստական պրոպագանդա են մղում, հրահանգավորում և հանձնարարում են զանազան թափթըփուկների՝ ներգործել երիտասարդական և ուսանողական կազմակերպությունների ղեկավարների վրա, դրանց փառատոնային շարժումից հեռու պահելու, խաղաղության համար մղվող պայքարից շեղելու նպատակով:

Սակայն, ի վերջո, ձախողման են դատապարտված իմպերիալիզմի բոլոր նկրտումները՝ կասեցնելու, արգելակելու դեմոկրատական երիտասարդության և ուսանողների փառատոնային շարժումը: Փառատոնային գաղափարները կենդանի են և կենսունակ: 1984 թվականի փետրվարի սկզբներին Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիայի և Ուսանողների միջազգային միության նախապատրաստական կոմիտեն հավանություն տվեց լենինյան կոմերիտմիության առաջարկությանը՝ երիտասարդության ու ուսանողների XII համաշխարհային փառատոնն անցկացնել 1985 թ. ամռանը, Մոսկվայում՝ «Հանուն հակաիմպերիալիստական համերաշխության, հանուն խաղաղության և բարեկամության» նշանաբանով: Ավելի քան 150 երիտասարդական, ուսանողական, արհմիութենական, հակապատերազմական, կրոնական և այլ կազմակերպությունների պատվիրակներ, որոնք ներկայացնում էին գրեթե 100 երկրներ, մի անգամ ևս հաստատեցին երիտասարդական համաշխարհային փառատոնային շարժման ավանդույթների հետագա զարգացման կարևորությունը: Նրանք արտահայտեցին իրենց պատրաստակամությունը՝ ամեն ինչ անել, որպեսզի Մոսկվայում կայանալիք առաջիկա փառատոնը վերածվի հանուն խաղաղության, ժողովուրդների փոխըմբռնման և համագործակցության հողագնդի առաջադեմ երիտասարդության պայքարի մի նոր ցույցի:

Երիտասարդության և ուսանողների համաշխարհային XII փառատոնի նախապատրաստության միջազգային կոմիտեն կոչ ուղղեց աշխարհի երիտասարդությանը. «Մենք, ասված է կոչում, ողջունում ենք լենինյան կոմերիտմիության առաջարկությունը երիտասարդության և ուսանողների XII համաշխարհային փառատոնը 1985 թըվականի ամռանը Մոսկվայում անցկացնելու վերաբերյալ»:

Խորհրդանշական է երիտասարդության և ուսանողների մոսկովյան փառատոնի անցկացման ժամանակը: 1985 թ. նշվելու է հիտլերյան ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ տարած հաղթանակի 40-ամյակը, կլրանա հանուն Եվրոպայի անվտանգության և համագործակցության՝ Հելսինկիում կայացած խորհրդակցության եզրափակիչ ակտի ստորագրման 10-ամյակը: Խորհրդանշական է և այն, որ 1985 թվականը ՄԱԿ-ի կողմից հայտարարված է երիտասարդության տարի:

Այսօր, երբ ռազմամոլ և հետադիմական շրջանները մարդկությանը հրում են միջուկային աղետի անդունդը, առաջադեմ երիտասարդությունը վճռականորեն պահանջում է դադարեցնել սպառազինությունների խելացնոր մրցավազքը, ամերիկյան ռազմամոլների կողմից հրթիռամիջուկային զենքի տեղադրումը Եվրոպայի մայրցամաքում և աշխարհի այլ մասերում, հանդես է գալիս հանուն այդ զենքի արգելման և լիակատար վերացման, ընդդեմ զանգվածային ոչնչացման առավել հրեշավոր տեսակների ստեղծման, հանուն համընդհանուր և լիակատար զինաթափման:

Առաջիկա փառատոնի նախապատրաստության միջազգային կոմիտեն իր կոչում վստահություն հայտնեց, որ սովետական երիտասարդությունը, որը կարևոր դեր է

խաղում միջազգային երիտասարդական և ուսանողական շարժման մեջ, ամեն ինչ կանի այդ խոշոր միջոցառումը հաջողությամբ անցկացնելու համար:

Հողագունդը մեզ հայտնի միակ մարդաբնակ մոլորակն է, և պետք է ամեն ինչ անել այն պահպանելու համար: Իսկ դրա հուսալի երաշխիքը կյանքի զարթոնքի պահապանների՝ աշխարհի բոլոր ջահելների համախմբումն է, բռունցքվելը բոլոր չար ուժերի դեմ:

«ՍՄԿԿ-ն, Սովետական Միությունը,— ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների համաքաղաքային խորհրդակցությունում, 1984 թ. մայիսի 28-ին,— ամեն ինչ անում են և կանեն, որպեսզի պետությունների հարաբերությունները, անկախ նրանց սոցիալական կարգերից, լինեն խաղաղ գոյակցության, բարիդրացիության և իրավահավասարության հարաբերություններ... ՍՍՀՄ-ը, սոցիալիստական ընկերակցության երկրները ջատագովում հանդես են գալիս միջազգային լարվածության մեղմացման, խաղաղության ամրապնդման ընդհանուր ուղղված նախաձեռնություններով»:

Ակնհայտ է, թե այդ նախաձեռնությունների իրականացման գործում ինչպիսի զորավիգ կարող են լինել ողջ աշխարհի առաջադեմ երիտասարդները, եթե նրանք միավորվեն:

**Մ. ԹՈՒԹԽԱԼՅԱՆ**




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 16.10.84 թ.: Ստորագրված է տպագրության 14.11.84 թ.: ՎՖ 12830: Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16032: Պատվեր՝ 2067:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.